

Հոկտեմբերի 29-ին լրանում է
Կոմերիտմիության ծննդյան 70 տարին

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58-08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 10•88



Հանձնված է արտադրության 28.07.88 թ.: Ստորագրված է տպագրության 20.12.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,292 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66232: Պատվեր՝ 1350: Գինը՝ 15 կոպեկ:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 28.07.88 г. Подписано к печати 20.12.88 г. Формат 70×100 1/16. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 66232. Заказ 1350. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի առաջին էջին՝

**ԳՈՐԾ՝ ԼԱՎԻՆՅԱ ԲԱԺԲԵՈՒԿ-ՄԵԼԻՔՅԱՆԻ ԾՆՎ. 1922 Թ.**

## ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՅԲՈՒԲԵՆ

ԳՐԻԳՈՐԻ ԲԱԿԼԱՆՈՎ




Ռուսերենից թարգմանեց ՆՎԱՐԴ ՍԻՄՈՆՅԱՆԸ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ինչի՞ համար է մարդը պատասխանատու: Այն ամենի՞, ինչ կատարվում է երկրի վրա, թե՞ մի ինչ-որ ավելի փոքր բանի:

Ռոնիի «Պայքար կրակի համար» գրքում, որն, ի դեպ, բավականին լավ գիրք է, պատմվում է նախապատմական մարդկանց մասին: Չէ՞ որ նրանց մասին մեզ հասած տեղեկությունները բավականին սուղ են: Նրանք, ովքեր կարդացել են այդ գիրքը, երևի հիշում են բովանդակությունը: Տղային հանձնարարել էին պահպանել կրակը: Այն ժամանակ մարդիկ չէին կարողանում կրակ հայթայթել և պահպանում, չէին թողնում, որ այն հանգչի: Բայց տղան քնում է, և կրակը հանգչում է: Իսկ այդ նշանակում է, որ ողջ ցեղախումբը դատապարտվել է քաղցի, ցրտի, գուցեև՝ մահվան: Տղային վստահելով կրակի պահպանումը, ցեղախմբի մարդիկ փաստորեն նրան էին վստահել իրենց կյանքը: Իսկ տղան նրանց մահվան է դատապարտում:

Այս օրինակով կարելի է համոզվել, որ պատասխանատու լինել այլոց համար՝ կնշանակի պատասխանատու լինել նախ ինքդ քեզ համար:

Ցանկացած հանգամանքներում ինքն իրեն տիրապետել,— այսպիսի կարողության տեր մարդն է միայն արժանի այլոց համար պատասխանատու լինելու բարձր կոչմանը:

Բայց հեռավոր ժամանակներում մեկի սխալմունքը կամ անպատասխանատվությունը չէին ունենում այն սարսափելի հետևանքները, ինչպես լինում է մեր օրերում: Այն ժամանակ մարդիկ քիչ էին: Նրանք առանձին ցեղախմբե-




րով ապրում էին անսահման թվացող երկրի վրա: Այժմ մենք գիտենք, որ ապրում ենք փոքր մոլորակի վրա: Տիեզերքից մենք արդեն տեսել ենք մեր Երկիրը: Այն փոքր է: Մարդիկ փոխկապակցված են միմյանց, եթե անգամ այդ չեն գիտակցում: Ըստ էության՝ մեր Երկիրը ևս մի տիեզերանավ է, իսկ մենք բոլորս՝ նրա անձնակազմը: Եվ պարզ է, իհարկե, թե անձնակազմի աշխատանքից որքան շատ բան է կախված:

Երբ խոսում են պատասխանատվության մասին, հիմնականում օրինակներ են բերում ռազմաճակատային կյանքից: Իրոք, ռազմաճակատում, արտակարգ հանգամանքներում շատ-շատերի կյանքի և մահու հարցը պայմանավորված է մեկի արարքով: Եթե ծանր և կրիտիկական պահին կարողացար մարդկանց քո արիությամբ ետևիցդ տանել՝ հաղթանակ է: Իսկ եթե լքեցիր կովի դաշտը՝ խուճապի մատնելով մյուսներին ևս՝ պարտություն է, կործանում:

Բայց մի՞թե միայն ռազմաճակատում են սխրանքներ կատարվում: Մի՞թե միայն ռազմաճակատում են մարդկանց փրկում:

Պաստերը խաղաղ մարդ էր և հավանաբար ռազմի դաշտում քաջության օրինակներ չցուցաբերեր: Բայց նա օժտված էր գիտնականին հատուկ քաջությամբ: Նա մի այնպիսի հաղթանակ է տարել, որ շատ ավելի կարևոր է, քան իր հայրենակցի՝ Նապոլեոնի բոլոր հաղթանակներն իրար գումարած, որոնք ի վերջո ավարտվել են պարտությամբ և մարդկային զոհերով: Պաստերի հայտնագործությունը միլիոնավոր մարդկանց կյանք է փրկել: Մեզանից շատերն այսօր ապրում են շնորհիվ նրա հայտնաբերած պատվաստման, որը մարդկանց հնարավորություն տվեց հաղթահարել ժանտախտ և ծաղիկ հիվանդությունները:

Արդյո՞ք միայն տաղանդն է հնարավորություն ընձեռում մեծ հայտնագործություններ կատարելու: Մեծ հայտնագործությունների համար անհրաժեշտ է նաև պատասխանատվության մեծ զգացում: Մեծ գիտնականն ու մեծ գրողը նաև մեծ աշխատավորներ են: Նրանք պատասխանատվության մեծ զգացումով են օժտված իրենց բնատուր շնորհի հանդեպ: Նրանք առևտուր չեն անում իրենց ընդունակությունների ընձեռած հնարավորություններով, այլ այդ





շնորհը բազմապատկում են աշխատանքով: Իսկ հայտնի բան է, որ մարզվելով ընդունակությունները աճում են, ինչպես մկանները:

Պաստերի հայտնագործությունը ժամանակի առումով հեռու էր պրակտիկ գործածումից: Բայց կան հայտնագործություններ, որոնք գիտնականի առջև ի սկզբանե հարց են դնում, թե ինչ է այն տալու մարդկանց՝ բարօրությո՞ւն, թե՞ բնաջնջում: Ֆիզիկոսներն աշխատելով ատոմի տրոհման վրա, հասկանում էին, որ իրենց աշխատանքի առաջին արդյունքներից մեկը լինելու է ատոմային ռումբը: Իսկ ի՞նչ կնշանակեր ատոմային ռումբ՝ Հիտլերի ձեռքերում: Մարդկության կործանում: Գիտակցելով իրենց պատասխանատվությունը ժողովրդի առջև, ամենևին էլ ոչ բոլոր գերմանացի գիտնականներն էին համաձայն Հիտլերի ձեռքը տալ նման սարսափելի մի զենք: Եվ չնայած ամենևին էլ դա չէր գլխավոր պատճառը, բայց ամեն դեպքում պատճառներից մեկն էր, որ ֆաշիստական Գերմանիայում այդպես էլ չհասցրեցին ատոմային ռումբ ստեղծել:

Այսօր միայն մարդն է պատասխանատու երկրի վրա կատարվող ամեն ինչի համար: Հազարավոր տարիներ նա կռվել է բնության դեմ, ինչպես թշնամու: Այժմ նա որպես ավագ է պատասխանատու բնության համար, մեր մոլորակը շրջապատող օդային ավազանի, օվկիանոսների, անտառների, լճերի և նրա վրա ապրող կենդանական աշխարհի համար: Իր այդ պատասխանատվությունը մարդը չի կարող փոխանցել մեկ ուրիշի, քանզի միայն ինքն է օժտված բարձրագույն ուժով՝ բանականությամբ: Հետևաբար, նրա արարքները պետք է բանական ու մարդկային լինեն: Իսկ ո՞վ է այդ մարդը: Մենք բոլորս ենք և յուրաքանչյուրս՝ առանձին-առանձին:

Ապագայի բոլոր պետական գործիչները, որոնց վիճակված է պատասխանատու լինել ժողովուրդների ճակատագրերի համար, բոլոր մեծ գիտնականները, գրողներն ու փիլիսոփաները, որոնց անունները դեռ ոչ մեկին հայտնի չեն, բոլոր նրանք այսօր նստած են աշակերտական նստարանների առջև: Եվ ով պատանեկության տարիներին իր մեջ չի դաստիարակել պատասխանատվության զգացումը, նա հասուն տարիքում զուրկ կլինի դրանից:

Դա կեսօրից քիչ առաջ էր: Առջևումս մի ստվեր տեսա: Բայց ի զարմանս ինձ՝ ստվերը տեր չուներ, այլ քայլում էր ինքն իրեն:

Սահում էր առաջ, շեղ փռվում գետնին: Հասնելով մայթին, անսպասելի կոտրվում էր, բաժանվում երկու մասի, ապա անցնելով պատի մոտով, ուղղվում էր հասակով մեկ, ասես մարտահրավեր էր նետում մեկին, հավանաբար արեգակին, քանի որ աշխարհը ոչինչ չէր ծածկում նրանից: Ես հետևեցի նրան, և ճիշտ այն պահին, երբ մտնում էր մի ամայի, նեղ փողոց, ինձ թվաց, թե նա այդ կողմ գնաց առանց տատանվելու:

Բայց արդյոք ժամանակը չէ՞ նկարա-




Թարգմանեց ՍՈՖԻ ԱՎԱԳՅԱՆԸ

գրելու այդ ստվերը, ավելի ճիշտ՝ նրա ուրվագիծը:

Հայտնի է, որ յուրաքանչյուր ստվեր անդադար փոխում է իր ուրվագիծը. մեկ ասես նիհարում է, անհամաչափ երկարաձգվում, մեկ, ընդհակառակն, այնքան է լայնանում, որ նմանվում է տակառի: Միայնակ ստվերը, որի մասին պատմում եմ, իր համեմատաբար կայուն վիճակով բացահայտում էր բարեկազմ մի երիտասարդի ուրվապատկեր. երբեմն խուսափուկ գծագրվում էին բեղի ծայրը, նուրբ կիսադեմը:

Փոքրիկ փողոցի վերջում հայտնվեց մի աղջիկ: Նա գալիս էր դիմացից, և ստվերը, հավասարվելով աղջկան, սահեց նրա

մարմնի վրայով, ասես ուզում էր համբուրել: Աղջիկը ցնցվեց, արագ շրջվեց նրա կողմը, բայց ստվերը մի պահ ցոլաց ու անցավ, սուրալով անհարթ սալահատակի վրայով: Աղջիկը, որ ուներ տխուր և համակերպված դեմք, բոլոր նրանց նման, ովքեր պատերազմում մարդ են կորցրել, դժվարությամբ զսպեց ճիչը, և ինձ թվաց, թե դեմքին բոցավառվեց ափսոսանքին խառնված ուրախություն... Հետո դեմքը նորից դարձավ թախծոտ, բայց աչքերը ագահորեն հետևում էին կապտավուն ստվերի սահուն շարժմանը:

— Ուրեմն ճանաչո՞ւմ եք նրան,— հարցրի աղջկան,— ճանաչո՞ւմ եք այդ միայնակ, կապույտ ստվերին:

— Դուք նույնպե՞ս տեսաք,— բացականչեց նա:— Ուրեմն դո՞ւք էլ տեսաք:— Այո, այո, երկուսս էլ տեսանք մարդկային մարմնի ձև ունեցող այդ շարժուն, հոսուն չգոյությունը: Ինձ թվում է՝ ճանաչեցի: Օհ, ոչ, չի թվում, այլ իսկապես ճանաչեցի, տեսա կիսադեմը, բեղերը, թեև չտեսա հայացքը... Ճանաչեցի: Չի փոխվել այն օրից, ինչ վերջին անգամ արձակուրդ է եկել այստեղ: Մենք նշանված էինք և պիտի ամուսնանայինք, եթե նրան մեկ էլ թողնեին տուն: Բայց արկի բեկորը դիպել էր սրտին, սպանել էր: Եվ այնուամենայնիվ տեսնում եք նրան: Ողջ է նրա ստվերը: Եվ ավելի նյութական է, քան նրա հուշը, և միաժամանակ՝ ավելի անցողիկ...

Աղջիկը հեռացավ: Նրա աչքերում փայլում էր ջահել, կրակոտ սերը: Նրան հրաժեշտ տալուց հետո շարունակեցի քայլել ստվերի ետևից: Ուրվապատկերը սահում, ծալվում էր սալահատակի անհարթությունների վրա: Մեկ անգամ էլ նրան տեսա եկեղեցու մոտ, հետո գլխավոր փողոցում, հայտնվում ու կորչում էր անցորդների մեջ, որոնք չէին նկատում իրենց կողքից սահող հարափոփոխ, կապտավուն ստվերը:

Ստվերը թափառում էր փողոցներում, կանգ առնում խանութների ցուցափեղկերի առջև, ակներևաբար այդ զբոսանքը հարազատ վայրերով անսահման բավականություն էր պատճառում նրան: Ժամանակ առ ժամանակ նա չքանում էր, խառնվում ուրիշ ստվերների, քայլող մարդկանց ստվերներին, կարծես բնավ չէր տարբերվում նրանցից:

Քաղաքային զբոսայգում, ուր հետևում էի նրան, ստվերն աշխատում էր մոտ գտնվել վարդի ծաղկած թփերին: Թվում էր՝ ըմբոշխնում է վարդերի աննման բուրմունքը և, թվում էր, ցնցվում է հեկեկանքներից:

Ես շունչս պահած դիտում էի, թե ինչպես էր մորմոքվում խեղճ ստվերը: Ուզում էի մի կերպ սփոփել, եղբոր նման համբուրել նրան, ինչպես ժամանակին համբուրվում էին առաջին քրիստոնյաները: Բայց նրա առեղծվածն ինձ համար անլուծելի էր, և միակ բանը, որ կարող էի անել, իմ ստվերը նրա աննյութ մարմնին միախառնելն էր:

Ես խոնարհվեցի նրա վրա և անմիջապես ընկրկեցի. վախեցա տրորեմ, ցավ պատճառեմ նրան: Ստվերի մենակությունը հոգումս խոր կարեկցանք էր առաջացնում: Բայց հանկարծ, ինչ-որ անմեկնելի ձևով, ստվերն ինձ հասկացրեց, թե ինքը երջանիկ է և իր արտասուքը ուրախության արտասուք է, քանզի իրեն անմահություն է ընծայվել. հաշտվելով մարմնի անհետացմանը, նա հաղորդակից է մնացել այն ամենին, ինչ թանկ և հարազատ է եղել իրեն՝ մահացածին... Եվ ինքը երջանիկ է, որ կարող է հաճախել երբեմնի ծանոթ վայրերը:

Այո, այդ այդպես էր: Ինձ համակեց հանդարտ ուրախություն, և ես արդեն ժպիտով դիտում էի, թե ինչպես է ստվերը խայտում կանաչ խոտերի ու ծաղկած թփերի մեջ:

Այնուհետև տեսա, որ ստվերը հեռանում է քաղաքային զբոսայգուց, նորից հետևեցի նրան: Ինձ տարավ-հասցրեց գերեզմանոց, այն տեղը, որ նախատեսված էր այն մարդու համար, ում ինքն էր պատկանում մի ժամանակ, բայց որի մարմինը այնտեղ չի թաղվելու:

Հետո ստվերը վերադարձավ մթնշաղի մեջ սուզվող քաղաքը, և այստեղ իջավ գիշերը:

Հետզհետե ստվերը ավելի դժվար էր զանազանվում, մինչև որ ի վերջո անհասարակ կորավ թանձրացող խավարում: Բայց ես հասկացա, որ մահն անզոր է և հազիվ թե կարողանա մահացածներին խանգարել ապրելու մեր մեջ: Մահացածները չեն անհետանում: Այն միայնակ, հավերժական ստվերը, որ թափառում էր փոքրիկ քաղաքի փողոցներում, պակաս իրական չէր, քան մեր հիշողության մեջ դրոշմված, մեզանից հեռացածների դեմքերը, մեզ երբեք չլքող կապույտ ուրվականները:

# Զանգի Զանգի

## Քանի՞ ձուկ կա ծովում

Վիճում էին գիշեր-ցերեկ
Ձկնորսները՝ թվով՝ երեք:

Ուզում էին ճշտել հաստատ.
Քանի՞ ձուկ կա ծովում անտակ:

— Յոթից ավել,— մեկը ասաց,
— Ծովատառեխն էլ չհաշված:

— Հազարից շատ,— երկրորդն ասաց,
— Օձաձկներն էլ գումարած:

Երրորդն ասաց. Ի՞նչ իմանաս,
Հազար ու բյուր, ավել-պակաս:

Եվ երեքն էլ ճիշտ էին, ճիշտ,
Բայց արի տես՝ վիճում են միշտ:

## Ծխնելույզ մաքրողը

— Ծխնելույզ մաքրող,
Ծխնելույզ մաքրող,
Երբևէ մաքուր
Դու լինո՞ւմ ես որ:

— Լինում եմ մաքուր
Ազատ օրերին,
Առավոտները,
Զատկի տոներին:

Ծխնելույզներն եմ
Մաքրում բոլորի
Եվ սևանում եմ
Այսպես օր-օրի:

— Բայց դու ինչո՞ւ ես
Ծպտում շարունակ:
— Որ ատամներս
Երևան ճերմակ:

## Եթե ուզում ես...

Եթե ուզում ես,
Եթե ուզում սեղան,
Ունենալ պիտի
Անպայման փայտ:
Ունենաս դու փայտ
Եթե ուզում ես
Ունենալ դու փայտ,
Ունենալ պիտի
Անպայման դու ծառ:
Ունենաս դու ծառ,
Եթե ուզում ես
Ունենալ դու ծառ,
Ունենալ պիտի
Անպայման դու սերմ:
Ունենաս դու սերմ,
Եթե ուզում ես
Ունենալ դու սերմ,
Ունենալ պիտի
Անպայման պտուղ:
Ունենաս պտուղ,
Եթե ուզում ես
Ունենալ պտուղ,
Ունենալ պիտի
Անպայման ծաղիկ:
Ունենաս ծաղիկ,
Եթե ուզում ես
Ունենալ սեղան,
Ունենալ պիտի
Անպայման ծաղիկ:
Ունենաս ծաղիկ:

## Էսկիմոսներ

Տարօրինակ էսկիմոսներ,
Սառույցից է երկիրը ձեր:

Սառույցից է փողոց ու այուն,
Սառույցից է ամեն մի տուն:

Եվ առաստաղ, և պատ, և շեմ
Սառույցից են, ցեմենտից չեն:

Մահճակալն ու աթոռն անգամ
Սառույցից են հավերժական:

Վառարանի աղյուսն անես
Սառույցից է նմանապես:

Սառույցից չէ միայն մի բան՝
Էսկիմոսի սիրտն անման:

Նա Հյուսիսի արևն է տաք
Բևեռային երկնքի տակ:

Թարգմանեցին
ԳԱԳԻԿ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԸ,
ԱՐՄԵՆ ՇԵԿՈՅԱՆԸ,
ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆԸ

**ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ**

# Դարեր առաջ և այսօր...



Հատուկ հարմարանք՝ փողոցում: Մոտեցիր, փոքրիկ բացվածքից գցիր 1 կ. և շնչիր մի կում մաքուր թթվածին: Եթե շարունակում ես շնչահեղձ լինել, գցիր երկրորդ, երրորդ կոպեկանոցը: Այսպիսի ավտոմատ հարմարանք տեղադըրված է Ճապոնիայի համարյա բոլոր մեծ քաղաքների փողոցներում: 1968 թվականի ընթացքում կարդացած բազմաթիվ տեղեկություններից այս մեկն է, որ ցնցող տպավորություն է թողել ինձ վրա, և ես դա գրառել եմ իմ օրագրում: Ուրեմն, երկրագնդի վրա, ինչ-որ տեղ, մարդիկ հասել են այն վիճակին, որ փողոցում մաքուր օդ են վաճառում ու գընում:

Աշխարհի շատ քաղաքներում, որտեղ քիմիական գործարաններ կան և ավտոմեքենաների մեծ կուտակում, վիճակը նույնն է՝ մի քիչ ավելի, մի քիչ պակաս: Ահա ինչու էկոլոգիան՝ գոյապահպանությունը, դարձել է առաջնային հարց:

Ինչ խոսք, դու գիտես, իմ պատանի բարեկամ, որ մարդը բնության մասնիկն է և իր թե՛ ֆիզիկական, թե՛ հոգևոր կյանքով սերտորեն կապված է բնությանը: Ամեն վայրկյան մարդը և բնությունը փոխազդեցության մեջ են, փոխկապակցության, այլ կերպ ասած՝ ներգործում են միմյանց վրա՝ լավ կամ վատ: Մարդու վերաբերմունքից է կախված, թե ինչ վիճակում է իրեն շրջապատող միջավայրը՝ օդը, ջուրը, անտառը, դաշտերը, գետերն ու աղբյուրները: Եթե նա խելացի է ու գիտակից, եթե նա չափավոր է, ապա մաքուր են օդը, ջուրը, անտառներն ու դաշտերը: Մի խոսքով՝ առողջ է բնությունը: Այո, այո, չզարմանաս, բնությունը նույնպես կարող է առողջ կամ հիվանդ լինել (երբեմն ծանր ու անբուժելի) և հենց դրանից էլ, մեծ մասամբ, կախված է մարդու առողջությունը՝ մեր բոլորի և նույնիսկ մեր զավակների ու թոռների:

Ամեն ոք՝ մեծ և փոքր, պետք է ճանաչի բնությունը, հասկանա նրա «լեզուն»: Առավել կարևորը, սակայն, այն է, որ նա գիտակցի՝ իրենից ևս կախված է բնության պահպանությունը: Այ՛, օրինակ՝ քեզնից, սիրելի ընթերցող, որ կարդում ես այս տողերը. դու գիտե՞ս, թե ինչքան արժեքավոր գործ կարող ես անել: Ինչ խոսք, նախ պետք է իմանաս ինչ անել և ինչպես անել: Մեր զրույցների նպատակը այդ է լինելու, նախ՝ ճանաչել բնությունը, ապա և՛ պահպանել այն:

Բնությունը հզոր է ու գեղեցիկ. փոթորկոտ ծովեր, ջրառատ, արագահոս գետեր, անտառնե՜ր, անտառնե՜ր, անծայր ու անեզր, տափաստաններ ու դաշտավայրեր... Եվ ի՜նչ կենդանական աշխարհ է պարփակում իր մեջ՝ թռչուններ, գազաններ, միջատներ, ձկներ...Միլիոնավոր տեսակներ, միլիոնավոր տարատեսակներ: Այդքան բազմազան, հզոր ու գեղեցիկ բնությունը, միաժամանակ, մանկան պես անպաշտպան է: Հեռու չգնանք, տեսնենք, թե ինչ վիճակում է քեզ լավ ծանոթ Ծաղկաձորը:

Լեռնային մաքուր, զով օդ, ծաղկառատ ձորեր ու բլուրներ, սառնորակ աղբյուրներ՝ այն ամենը, ինչ անհրաժեշտ էր հանգստի ու առողջանալու համար: Բայց ի՞նչ ասենք այն «գիտնականին», որ Ծաղկաձորի քթի տակ, Հրազդան քաղաքում, ցեմենտի գործարան կառուցեց: Դա նշանակում էր քամու բերան տալ մի քանի հաստափոր ծխնելույզ, որոնցից գիշեր-ցերեկ, ամիսներ ու տա-





րիներ (արդեն մոտ 20 տարի) ցեմենտի փոշի է մաղվում Հրազդանի, Ծաղկաձորի, Հանքավանի անտառների գլխին: Գիտե՞ք, թե աղետն ինչքան մեծ կլիներ, եթե իրականանար «գիտնականի» ամբողջ մտահղացումը՝ լեռնաքիմիական գործարանը: Այն ժամանակ ցեմենտի փոշուն կգումարվեին նաև քիմիական բազմատեսակ թունավոր թափոնները, որոնք անդառնալիորեն կապականեին շրջապատը:

Մեծ ջանքերով կանխվեց այդ սխալ, հակագիտական ծրագրի իրագործումը (թեև կիսով չափ), և հիմա ամեն ինչ անում են, որպեսզի փոշեկուլների օգնությամբ պակասի արտանետվող փոշու քանակը, ապա և ապագայում վերջնականապես փակվի գործարանը: Եթե Ծաղկաձորի անտառները, քնքուշ ծաղիկները (որոնք այնքան պակասել են), լեզու ունենային, շատ բան կպատմեին իրենց վիճակի մասին: Անձրևից հետո բավական է ուշադիր զննել տերևները՝ տեսնելու համար ծայրերից կախված ցեմենտի «կաթիլները»: Չէ՞ որ այդ ցեմենտը տարիներով լցվում է հողի մեջ, փոխում նրա բաղադրությունը, արգելակում մատղաշ ծառերի աճը, հետևաբար և՝ ողջ անտառի աճը:

Հիմա դու կարող ես հարցնել. «Իսկ ի՞նչ կարող եմ անել ես»:

Մի՛ մոռանա. դու ապագա գիտնականն ես, ապագա շինարարը, ինժեները, նախագծողը: Եվ որպեսզի դու դպրոցը, բուհը ավարտելուց հետո լավ մասնագետ դառնաս, այժմվանից պետք է պատրաստ լինես սխալի դեմ ընդվզելու:

Դու պետք է լինես այն մարդը, որը նախագիծն անելուց առաջ մտածի՝ արդյո՞ք ամեն ինչ է հաշված-չափած, տվյալ կառույցը վաղը կամ տասնամյակներ անց ի՞նչ հետևանքներ կունենա, ինչպես կազդի մարդու կամ բնության վրա:

Սխալը կանխելը տասնապատիկ հեշտ է, քան կատարված սխալն ուղղելը: Չէ՛ որ միլիոններ են ծախսվում գործարան կառուցելու համար, (թեկուզ և՛ սխալ, թեկուզ և՛ անհեռանկար): Եվ ներդրված միլիոնավոր ռուբլիները պետք է «ետ ստանալ», ավելին՝ պետք է շահ ստանալ: Սա տնտեսագիտության օրենքն է: Այլ են սակայն բնության օրենքները, որոնք ամենափոքր սխալն իսկ չեն հանդուրժում: Բնության հանդեպ մարդու թույլ տված սխալը մարդու դեմ է դուրս գալիս: Պարզ չէ՞, թե առողջությունն ինչ աստիճան է խարխլվում, երբ մարդը շնչում է կեղտոտ օդ, ուտում է միրգ և բանջարեղեն, որոնք ջրված են կեղտոտ ջրով: Ա՛յդ և միմիայն ա՛յդ է պատճառը, որ այսօր ամբողջ աշխարհում մեծ թափ է առել բնության պահպանության խնդիրը: Սակայն դու պետք է իմանաս, որ սա բոլորովին էլ նոր խնդիր չէ: Դարեր ու հազարամյակներ մարդը հոգացել է բուսական ու կենդանական աշխարհի համար: Հնում բնությունը շատ է տուժել տարերային աղետներից, երաշտից, հորդառատ տեղումներից, մորեխից... Ժողովուրդը դրանք համարել է աստծո պատիժ: Այդուհանդերձ մարդիկ ձեռքերը ծալած չեն նստել: Վաղ ժամանակներից մեզ են հասել բնության պահպանության բազմաթիվ հուզիչ օրինակներ: Դրանցից մեկին ես հանդիպեցի 12-րդ դարի հայ պատմիչ Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրությունը» կարդալիս: Նկարագրությունը ոչ միայն

բացառիկ արժեք ունի իմանալու հազվադեպ մի եղելության մասին, այլև այսօրվա համար չափազանց ուսանելի է: Ահա, լսեք. «1059 թվականն... Մի օր առավոտյան, մարդիկ տնից դուրս գալով, տեսան, որ երկինքը պարզ է, իսկ գետնին տեղացել է կարմիր ձյուն[1], որը ծածկել է երկրի չորս կողմը՝ արևելք և արևմուտք, հյուսիս և հարավ: Ձյունն սկըսեց տեղալ երկուշաբթի օրը և վաթսուն օր շարունակ եկավ: Գիշերը գալիս էր, իսկ ցերեկը՝ հալվում: Կարմիր ձյունը, սակայն, մեկ օր տեղաց: Այդ տարին տեղի ունեցավ բոլոր չորքոտանիների՝ անասունների, գազանների, ինչպես և թռչունների անկում: Սաստիկ ձմռան պատճառով իրենց համար կեր չգտնելով, նրանք գնում էին բնակատեղիները և ապաստան փնտրում... Անասունները՝ հոտերով, իսկ թռչունները՝ երամներով թափառում էին փողոցներում և մտնում տները: Պետք էր տեսնել մարդկանց մեղքերի պատճառով վայրի անասունների և թռչունների գլխին եկած օրհասը: Բայց ովքեր որ գթասիրտ էին, ամբողջ ձմեռը իրենց տանը կերակրեցին նրանց և առանց վնաս հասցնելու արձակեցին»:

Շարունակելով կարդալ Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրությունը», մենք իմանում ենք, որ քաղաքապետը հրամայել է «դաշտերում և լեռներում թռչունների համար քառասուն քոռ[2] ցորեն, գարի, կորեկ և ամեն տեսակի այլ ընդեղեններ ցրիվ տալ, իսկ անասունների համար՝ մեծ քանակությամբ խոտ ու հարդ: Ահա այդ ձևով բազմաթիվ անասուններ և թռչուններ այդ փորձանքից կենդանի մնացին»:

Պատկերացնո՞ւմ ես, սիրելի ընթերցող, եթե մարդիկ գթասիրտ չլինեին և իրենց տներում չպատսպարեին սովալլուկ կենդանիներին կամ դաշտերում ու անտառներում կեր չցնեին, հաջորդ տարիներին այդ ամբողջ աղետյալ վայրերում ոչ մի թռչուն կամ վայրի գազան չէր մնա: Բնությունը կաղքատանար, իսկ մարդիկ կզրկվեին նրա բարիքներից:

[1]Կարմիր ձյուն— երբեմն պատահում է, որ ձյան կամ անձրևի հետ երկրի վրա է տեղում մեկ այլ վայրից քամու բերած գունավոր հող կամ ավազ:

[2]Քոռ— հնացած բառ է. հեղուկի, ընդեղենի չափ



ՎԵՐԳԻՆԵ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

## Ծնվող գարնան մեջ

Ժիր թիթեռնիկը՝
Ծիածանահյուս շորերը հագած,
Իջավ բամբասկոտ
Ու փշոտ վարդի
Թավշե թերթերին,
Իջավ ու սիրտ բազմերանգ,
Խենթ աշխարհը բացեց,
Պատմեց լույսի խենթություններից,
Լեռնաստանների երազներից խոսեց
Ու պարեց,
Ու պարեց այդ երազների մեջ,
Ու մեռնելիս անգամ... պարեց,
Ու սիրեցի ես այդ թիթեռնիկին,
Սիրեցի նրա աչիկները բիլ,
Որ միշտ ապրում են
Ծնվող գարնան մեջ,
Մեռնելով նրա ճանապարհներին:

## Ներբող մայրենի լեզվին

Ինձ հարազատ այնքան,
Իմ մայրենի լեզու,
Ամեն մի հնչյունդ
Լույսի մի թիթեռ է
Շուրթերին մանկական,
Որ հավաքվելով՝
Թռչունների նման
Դառնում են բառերի
Մի չվող երամ,
Մի չվող երամ,
Մաքուր լույսի խուրձ,
Որ երկնի լազուրում
Բորբ արև է դարձել
Լուսաբացներին
Ու հաց է պահել
Ինձ օրորոցում
Ու բարձունքների
Դաժան ճամփեքին:
Ինձ հարազատ այնքան,
Իմ մայրենի լեզու,
Դու ջերմ, դուք տաք այնքան,
Արեգակի լեզու:

## Գարուն է

Ու երազները բողբոջներ հագան
Ժպիտների տեսքով,
Ու շարվեցին պարանոցին գարնան…
Իսկ սերը լույսի ծաղիկներ ծաղկեցրեց
Եվ այգաբացի շուրթին դարձավ երգ…
Ու լուսաթերթեր թափվեցին
Անձրևների տեսքով.
Եվ երկինքը որոտաց՝ գարուն է:









## Գարնան ծնունդը

Քո երազները
Չվեցին երկինք,
Կապույտ հեռուներ
Ու արև դարձան,
Ես աչերն եմ նրանց
Մաքուր ու հրե:
Քո ժպիտներից
Ծառի ճյուղերին
Բողբոջները ծնվեցին,
Ես բարուրողն եմ նրանց…
Քո ծիծաղները,
Քո ծիծաղները մաքուր ու լուսե
Լուռ դրոշմվեցին
Առվակի սրտում…
Իսկ նա հարբել է.
Վախենում եմ ես՝
Չլինի թե հանկարծ
Սիրահարվել է…

## Գարնան երգ

Երազներում ի՞նչ են տեսնում բողբոջները՝
Նման մանկան աչիկների,
Երազներում աչիկները բացում-բացում,
Դառնում են երգ ու արբեցում…
Ու երգում են, երգում այնպես,
Որ չեն զգում, թե ինչպես են իրականում
Ոչ թե միայն աչիկները, այլ սրտերը
բացում իրենց…
Ու բացում են, որ տեղ անեն
Այս ծով երգին իրենց սրտում:

Աղմուկը խառն էր, խճճված, ուժեղանալիս՝ ծանրաշունչ, թուլանալիս՝ անորոշ: Նա շրջում էր կենսուրախ, բայց հետո մոլի տիրում էր այն ամենին, ինչին հընարավոր էր տիրել, և արհամարհում էր արտի ու զարկերակի համեստ բաբախյունները:

Եվ ահա մեկ անգամ նա մի սքանչելի ուրվական զգաց տարածության վրա, հըմայվեց, իսկույն վազեց դեպի նա: Բայց ինչքան ինքը մոտենում էր, այնքան այդ ուրվականը փախչում էր նրանից: Աղմուկը արտնեղած կանգ առավ և ինքն իր համար բարձրաձայն գոռգոռաց.

— Սա ի՞նչ է նշանակում: Այդ ո՞վ է, որ կարողանում է խաբս տալ ինձ:

— Լռությունն է, լռությունը... Նա ինձնից էլ է փախչում,— անսպասելիորեն պատասխանեց Հաչոցը:

— Քեզնից նա կարող է փախչել. դու մի կոկորդ ունես: Ես հազար ու մի կոկորդ ունեմ, և իմ ոռնոցներն աշխարհ են բռնել:

— Գիտենք, ճանաչում ենք, հարգում ենք,— արձագանքեց Մլավոցը:

— Եվ քո առջև խոնարհում ենք մեր ականջները,— ասաց նույնիսկ Մկկոցը:

— Լռությունը շատ է գեղեցիկ և մեզ մոտիկ չի թողնում,— հառաչեց Խրխինջը:

— Իմ ալիքավոր ճանկից նա չի պըրծնի,— պոռթկաց Աղմուկը, հեծավ Խըրխինջին ու սլացավ Լռության ետևից:

Խրխինջն ու Աղմուկը սուրում էին փոթորկի նման, Փոթորկին էլ հետները վերցրած՝ իբրև խթան: Լռությունը, սակայն, անհետանում էր Աղմուկի և նրա ուղեկիցների հայտնվելուն պես:

Վերջապես Աղմուկը կանգ առավ, Խրխինջը տեղում դոփեց, Փոթորիկը շնչասպառ եղավ: Չորս կողմն ավերածությունների արհեստական մի պատկեր էր ծավալվում, ինչպես պատերազմական որոտներից հետո: Բայց Աղմուկի կատաղությունը չէր հանդարտվում, և կատաղության միջից նա ուժասպառ մղկտում էր.

—Ես Լռությունն եմ ուզում, Լռությունը, սքանչելի Լռությունը՝ հոգու անդորրը, երանությունը:

— Սիրահարվել ես,— ասաց նրան Խրխինջը թախծալի,— ես էլ գիտեմ, թե դա ինչքան տխուր է և ցավալի: Մի բան նվում է կրծքի տակ և տխուր դուրս է թռչում որպես հառաչանք:



— Եվ անհուսալի՞ է, բոլորովին անհուսալի՞,— տագնապահար հարցրեց Աղմուկը:

— Չգիտեմ,— պատասխանեց Խրխինջը,— ես շատ բան չգիտեմ:

Այդպես՝ ճամփեզրին, դփդփալով ու մղկտալով, ձայնային ալիք էին առնում, ալիք էին տալիս Աղմուկն ու Խրխինջը, երբ լսեցին հեռուներից եկող ձայներ, որոնք մոտենում էին: Իրենց կյանքում նրանք այդպիսի ձայներ չէին լսել: Աղմուկը շատ էր ծանոթ մանր-մունր աղմուկների, որոնց ինքը կուլ էր տալիս և խոշորանում դրանց հաշվին, բայց այս ձայներն ուրիշ էին, շատ հաճելի, և Աղմուկն ափսոսում էր, որ դրանց գուցե

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# Աղմուկը



Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ոչնչացնի իր ներսում:

Խրխինջը գիտեր, նույնիսկ, թե ինչ բան է Մռնչյունը, Կոկոռցը, Ծվծվոցը և, ամոթ է ասել, նույնիսկ Զռռոցը, սակայն այս հրաշք ձայները, որոնք մոտենում էին, նման չէին ոչ մի լսածի, արտակարգ էին և հրապուրիչ:

Աղմուկն ու Խրխինջը՝ շունչները պահած, ունկնդրում էին, և երբ այդ ձայներն արդեն բավականին մոտիկ էին, Աղմուկը, ինչքան կարող էր կամացուկ, նրանց հարցրեց.

— Ովքե՞ր եք դուք:

— Ես Դոն եմ,— ասաց առաջինը:

— Ես Ռեն եմ,— ասաց երկրորդը:

— Ես Մին եմ,— ասաց երրորդը:

— Ես Ֆան եմ,— ասաց չորրորդը:

— Ես Սոլն եմ,— ասաց հինգերորդը:

— Ես Լան եմ,— ասաց վեցերորդը:

— Ես Սին եմ,— ասաց յոթերորդը:

— Ես էլ Ավագ Դոն եմ,— ասաց ութերորդը:

— Ինչ որ ծաղկեհնչյուններ լինեք,— հիացավ Խրխինջը:

— Ձեզ ո՞ր մի բարի կախարդն է հովանավորում,— նրանց հարցրեց Աղմուկը:

— Լռությունը...— միաձայն պատասխանեցին ութ եղբայրներն ու քույրերը:

— Լռությունը, կախարդական Լռությունը...,— ինքն իրեն շշնջաց Աղմուկը, բայց արդեն շնչահեղձ էր լինում և ակամա պոռթկաց, գոռգոռաց:

Երաժշտական ձայները ցրվեցին այս ու այն կողմ:

— Հեյ, հեյ, մի վախեցեք,— նրանց ետևից կանչեց Խրխինջը,— Աղմուկն այնքան էլ սարսափելի չէ: Նա ձեզ չի վնասի... շատ չի վնասի,— և շրջվելով դեպի ընկերը՝ ցածրաձայն ավելացրեց,— քեզ մի քիչ զսպիր, էլի:

Աղմուկը թուլացավ, երաժշտական ձայներն նորից վախվորած ու դանդաղ մոտեցան երկու անծանոթներին:

— Ձեն հանեք, ես ձեր ձենին մատաղ,— շունչը ներս գցելով ասաց Աղմուկը:

Ավագ Դոն հայտարարելու նման ասաց.

— Մենք կերգենք ձեզ համար,— և սկսեց ղեկավարել երաժշտական ձայների համերգը՝ ինքն էլ նրանց ձայնակցելով:

Խրխինջը կարողանում էր լուռ ունկնդրել, իսկ Աղմուկը մեծ ջանք էր գործադրում, որ երգող երեխաներին չխանգարի և չվախեցնի: Եվ ահա այդ երգի ընթացքում եղավ մի պահ, ապա դարձյալ այդպիսի պահեր, երբ կարճատև դադարների վայրկյանաչափ հատվածներում հայտնվեց ինքը՝ Լռությունը: Այդ պահերին Աղմուկը ցածրաձայն ու երջանիկ քրքջում էր: Եվ երանության մեջ սավառնելով՝ նա խոնարհվեց Խրխինջի ականջին ու հնասպառ ասաց.

— Ձայների մեջ ես, վերջապես, լսեցի Լռությունը... Թույլանում եմ այդ կախարդական Լռությանը հպվելուց... բայց... ինչ անուշ թուլություն է, Երկնային Որոտը վկա:

ԼԵՎՈՆ ԼԱԺԻԿՅԱՆ

# Հովհաննես Այվազովսկու «Բայրոնի այցը Ս. Ղազար կղզի. Վենետիկ» նկարը։

Այս տարվա սկզբին համաշխարհային գրական հասարակայնությունը հանդիսավորությամբ նշեց անգլիացի հանճարեղ բանաստեղծ Ջորջ Գորդոն Բայրոնի ծննդյան 200-ամյակը։ Հատկանշական է, որ մեզ մոտ այն նշվեց նաև իբրև ազգային հոբելյան՝ հիմնական շեշտը դնելով մեծ բանաստեղծի խռովահույզ կյանքի այն դրվագների վրա, որոնք սերտորեն առնչվում են հայ ժողովրդի և նրա ազգային մշակույթի հետ։

Բայրոնի այցը Վենետիկի մոտ գտնվող Ս. Ղազար կղզի, նրա ծանոթությունը տեղի հայկական Մխիթարյան միաբանության հետ և հայերենի ուսումնառությունը աշխարհածանոթ են ամենից առաջ հենց իր՝ բանաստեղծի նամակներից։ Գեղարվեստի սիրահարները, սակայն, այդ մասին գիտեն նաև աշխարհահռչակ ծովանկարիչ, մեր մեծ հայրենակից Հովհաննես Այվազովսկու մի կտավից, որ հենց այդպես էլ կոչվում է՝ «Բայրոնի այցը Ս. Ղազար կղզի. Վենետիկ»։

Հայաստանի պետական պատկերասրահը մեր ժողովրդի գեղարվեստական մշակույթի հարուստ գանձարաններից է, որտեղ ցուցադրվում և ուսումնասիրվում են անցյալի և մեր օրերի հայ, ռուս և արևմտաեվրոպացի նկարիչների ու քանդակագործների լավագույն աշխատանքները։ Դրանք այցելուներին պարգևում են հոգեկան վայելքի լուսավոր պահեր, գեղեցկություն և բարություն սփռում իրենց շուրջը։

Երկու սրահ-դահլիճներ են տրամադրված մեծ ծովանկարիչ, հայ ժողովրդի հանճարեղ զավակ Հովհաննես Այվազովսկու ստեղծագործություններին։ Դրանք հիմնականում ծովանկարներ են։ Գեղանկարչական այս ժանրը, որ ձևավորվել է 17-րդ դարի եվրոպական արվեստում, շատ բանով է պարտական հայ նկարչին։ Ծով նկարելը Այվազովսկու համար ծառայել է որպես ինքնարտահայտման, մարդկային զգացմունքների ու խոհերի գեղարվեստական արտացոլման նախասիրած միջոց։

Այստեղ ցուցադրվող Այվազովսկու նկարների շարքում կան այնպիսիք, որոնք առնչվում են անմիջականորեն իր ժողովրդի պատմության ու մշակույթի հետ։ Դրանցից է «Բայրոնի այցը Ս. Ղազար կղզի. Վենետիկ» կտավը։ Այն ստեղծվել է Այվազովսկու ստեղծագործական կյանքի վերջին տարիներին, ավելի կոնկրետ՝

1899 թ.-ին: Այս շրջանում նա ավելի հաճախ է անդրադառնում հայկական թեմատիկային, հայ ժողովրդի կյանքին, Հայաստանի բնությանը, նրա պատմությանը վերաբերող բազմաթիվ բարձրարվեստ նկարներ վրձնում: Թվենք դրանցից մի քանիսը. «Նոյը իջնում է Արարատից», «Հայ ժողովրդի մկրտությունը», «Հայ մարտիկի երդումը», «Խրիմյան հայրիկը Էջմիածնի շրջակայքում» և այլ հանրահայտ ստեղծագործություններ:

Ինչո՞վ բացատրել մեծ նկարչի ստեղծագործական հետաքրքրության այս ընդգծված ազգային ուղղվածությունը: Հիմնականում, անշուշտ, իր ժողովրդի քաղաքական կյանքի այն ողբերգական իրադարձություններով, երբ թուրքական բռնապետությունը, շարունակելով իր հայահալած քաղաքականությունը, անցյալ դարի 90-ական թվականներին ուղղակիորեն անցավ հայ ազգաբնակչության ջարդերին: Հայրենասեր նկարչի զենքը վրձինն էր, որի միջոցով նա լավագույնս արտահայտեց իր վերաբերմունքը: Այվազովսկու այդ շրջանի կտավները ատելություն էին առաջ բերում թուրք բարբարոսների հանդեպ: Նկարների վերնագրերն արդեն պատկերացում են տալիս դրանց բովանդակության մասին. «Հայերի ջարդը Տրապիզոնում 1895 թվին», «Թուրքական նավերը Մարմարա ծովն են թափում հայերին» և այլն:

Արդ, պատահակա՞ն էր արդյոք Այվազովսկու անդրադարձը Բայրոնի կերպարին: Իհարկե՝ ոչ: Ազատատենչ բանաստեղծի կերպարը, լեգենդ դարձած նրա կյանքը հուզել են մեծ նկարչին: Ինչպե՞ս կարող էր Այվազովսկին չհիշել խիզախ բանաստեղծի կյանքի այն շրջանը, որ կապվում էր հայ ժողովրդի պատմության, նրա մշակույթի, կոնկրետ ս. Ղազար կղզու հետ:

Վենետիկի մոտ գտնվող այս կղզին 1717 թ. սեպտեմբերի 8-ից ի վեր, երբ այնտեղ վերջնականապես հաստատվեց Մխիթար Սեբաստացու ստեղծած գիտակրոնական կազմակերպությունը, նվիրական է ամեն հայի համար: Դեռևս երիտասարդ տարիքում այստեղ եղած ժամանակ (ասենք, որ այս հաստատությունում ուսանել, ապա վարդապետ է ձեռնադրրվել նաև Այվազովսկու ավագ եղբայրը՝ նշանավոր պատմաբան ու մանկավարժ Գաբրիել Այվազյանը) Այվազովսկին լըսել էր Բայրոնի՝ կղզի այցելելու և հայերեն սովորելու մասին: Այս թեման, սակայն, նա կերպավորեց ավելի ուշ՝ ազդակ առնելով հայկական կոտորածներից: Ոգեկոչելով մեծ ազատասեր ու ճնշված ժողովուրդների բարեկամ Բայրոնի կերպարը, հայրենասեր նկարիչը ուզում էր մեկ անգամ ևս հիշեցնել բոլորին հայ ժողովրդի հարուստ մշակույթի մասին, որի հետ հանդիպման են ձգտել, որը գնահատել ու մեծարել են համաշխարհային գրականության ու արվեստի մեծերը, տըվյալ դեպքում՝ Բայրոնը:

Այսօր վերընթերցելով Բայրոնի նամակները՝ գրած Վենետիկից, մարդ ակամայից տեղափոխվում է այն հեռավոր 1816 թ.-ը, երբ հայրենիքը վերջնականապես թողած բանաստեղծը Վենետիկում գտնվելու առաջին իսկ օրերին որոշեց այցելել ս. Ղազար կղզում գտնվող Մխիթարյան միաբանություն: Դա նույն տարվա դեկտեմբերի 1-ին էր: Այդ օրը նա զրուցում է երկու միաբանների հետ, նրանցից լսում հայ ժողովրդի անուրախ պատմության, կղզում գտնվող հոգևոր գանձերի մասին: Այդ ամենը բանաստեղծին մղում է խորանալու «խոշտանգված ճակատագրով» այս ժողովրդի պատմության ու մշակույթի մեջ, սովորելու հայերենը: Հետաքրքրությունն այնքան մեծ է լինում, որ Բայրոնը խոստանում է կղզի այցելել հաջորդ օրը, այսինքն՝ դեկտեմբերի 2-ի վաղ առավոտյան: Ահա այդ երկրորդ այցի գեղարվեստական վերարտադրությունն ենք տեսնում մեզ հետաքրքրող նկարում:

Վաղորդյան արևի լույսով ողողված է ողջ տեսարանը՝ սպիտակ ամպերով առլեցուն երկինքը, հանդարտ ծովի հայելանման մակերեսին լողացող մեծ ու փոքրր առագաստանավերը, նոր արթնացող Վենետիկի մերձափնյա ուրվապատկերը: Ադրիատիկի գեղեցկուհու շենքերի ու մարմարյա պալատների մեջ, կենտրոնամասում պարզորոշ նշմարվում են սուրբ Մարկոսի զանգակատունը և Դոժերի հըռչակավոր պալատը: Կոմպոզիցիայի ներքևի աջ անկյունում պատկերված է սուրբ Ղազարի նավամատույցը, որտեղ միաբանության գիտնական այրերը հավաքվել են ողջունելու մեծ բանաստեղծի մուտքը կղզի: Պահի հանդիսավորությունն ընդգծում են և՛ գետնին փռված կարմիր գորգը՝ վրան շաղ տված վարդերով, և՛ Բայրոնին կղզի բերած գոնդոլի ծաղկազարդ ցռուկը, և՛ կղզու մոտով քիչ

հեռու անցնող մեկ այլ գոնդոլից այս տեսարանին հետևող մարդկանց ակնդետ հայացքները:

Գործողությունը ակտիվացնում է ափ ոտք դրած բանաստեղծի կերպարը, որն աչքի է ընկնում կենդանությամբ ու մեծ արտահայտչականությամբ: Նա ճիշտ և ճիշտ համապատասխանում է Բայրոնի հայերենի ուսուցիչ Հարություն Ավգերյանի հետևյալ բնորոշմանը, որ օրեր անց վերջինս գրել է իր օրագրում. «Էր նա երիտասարդ աշխույժ, զվարթաբարո և բոցակն. և թեպետ կաղ էր միով ոտամբ, բայց գեղեցիկ էր դիմօք»: Բանաստեղծը մի ձեռքին բռնել է գլխարկը, մյուսը՝ պարզել իրեն դիմավորողների կողմը:

Առաջին պլանում առանձնացված են երեք ֆիգուրներ, որոնք իրենց փառահեղ մորուքով, հոգևոր տարազով ու խոհուն հանդարտությամբ պատկառանք են ներշնչում: Նրանցից մեկը ամենայն հավանականությամբ միաբանության աբբահայր Ստեփանոս Ագոնցն է, մյուսները՝ Հարություն Ավգերյանը և Սուքիաս Սոմալյանը:

Չնայած այն բանին, որ հանճարեղ ծովանկարիչը մեծ վարպետ չէ մարդկային կերպարների, այն էլ այսպիսի հավաքական բազմության պատկերման գործում, բայց թեմատիկ-կոմպոզիցիոն այս կտավում նրան լիովին հաջողվել է տալ դրության բարոյահոգեբանական նկարագիրը:

Անսքող հետաքրքրություն և ազնվության դրոշմ կա նաև մյուս միաբանների դեմքերին ու նրանց զուսպ կեցվածքներում: Կերպարները ներկայացված են որպես հայ ժողովրդի հոգևոր ուժի և մտավոր լիցքի կրողներ: Ի վերջո՝ նրանց միջոցով Բայրոնը ծանոթացավ հայ ժողովրդին, հմայվեց նրա ուսումնատենչ ոգով: Նրանց մասին անգլիացի բանաստեղծը հետագայում պիտի գրեր. «Այս մարդիկ մի հարստահարված և բարձրատոհմ ազգի կրոնավորներ են»: Այդ մարդկանցից էր և Բայրոնի հայերենի ուսուցիչ, նշանավոր հայագետ Հարություն Ավգերյանը: Վերջինս իր հարազատ որդու նման սիրեց բանաստեղծին, հրճվեց հայերենի մարզում նրա ունեցած առաջադիմությամբ:

Բանաստեղծի կենսագիր Թոմաս Մուրը Բայրոնի կյանքի այսպես կոչված հայկական շրջանի մասին հետևյալն է գրում. «Մի ամբողջ ձմեռ, ամեն առավոտ դուրս գալով և գոնդոլա մտնելով, որը ինքը մենակ թիավարում էր, լողում էր դեպի Հայոց կղզին՝ վայելելու համար գիտուն և հյուրընկալ վանականների ընկերությունը և սովորելու նրանց դժվար լեզուն, իսկ երեկոյան նորից էր գոնդոլան մտնելով, վերադառնում քաղաք և միայն երկու ժամով հասարակության մեջ էր մտնում»: Սա խոսում է այն մասին, որ հայերեն սովորելու Բայրոնի որոշումը սկզբնական շրջանի սովորական զբաղմունքից աստիճանաբար նրա համար վերածվել էր հոգու պահանջի: Այլապես հազիվ թե նա մի ամբողջ ձմեռ ամեն օր մակույկով ճեղքեր ծովն ու հասներ Հայոց կղզի (ս. Ղազարը մինչև այսօր էլ այսպես են կոչում վենետիկցիք): Եղել են նույնիսկ ալեկոծ օրեր, երբ հետդարձին նա լողալով է վերադարձել Վենետիկ:

Բայրոնն այնքան է առաջադիմել հայերենի ուսման մեջ, որ թարգմանություններ է արել հայ մատենագիրներից, մասնավորապես Մովսես Խորենացուց: Նա նաև օգնել է հայերենի իր ուսուցչին՝ պատրաստելու հայերեն-անգլերեն և հըրատարակելու անգլերեն-հայերեն քերականությունները: Կարևորը, սակայն, այն չէ, թե որչափ տիրապետեց Բայրոնը հայերենին: Էականը երևույթն է, այն սևեռուն ուշադրությունը և ջերմ համակրանքը, որ նա տածել է հարուստ մըշակույթ ունեցող հայ ժողովրդի հանդեպ: Հանճարեղ քերթողն իրեն մեծ պատիվ է համարել սովորել մեր հնագույն լեզուն՝ «ճոխ ու դժվարին» հայերենը, դրանով ի մոտո առնչվել մեր դասական գրականությանը, հայ մշակույթին ընդհանրապես: Հանձինս հայերի՝ Բայրոնը տեսել է մի ժողովրդի, որ անհունորեն ատել է բռնությունն ու կողոպուտը, դարերով պայքարել ազատության համար: Հայերեն-անգլերեն քերականության համար նախատեսված առաջաբանում նա հետևյալ կերպ է բնութագրում մեր ժողովրդին. «Թերևս դժվար է գտնել մի ազգի տարեգրություն, որն ավելի զերծ լինի արատավորող ոճիրներից, քան հայերինը, որոնց առաքինությունները խաղաղասիրության արգասիք են, իսկ արատները՝ բռնադատման հետևանք: Սակայն ինչպիսին էլ լիներ նրանց ճակատագիրը, որ դառն է եղել, ինչպիսին էլ լինի ապագայում, նրանց երկիրը հավետ պիտի մնա աշխարհի ամենահետաքրքիր երկրներից



«Բայրոնի այցը Ս. Ղազար կղզի. Վենետիկ» (հատված)

մեկը»:

Ս. Ղազարի խաղաղավետությունն ու բարեհարմար դիրքը, հայ միաբանների ուսումնասեր ոգին Բայրոնին սնուցել են նաև բանաստեղծական տրամադրություններ: Այստեղ նա ունեցել է ազնիվ ներշնչանքի շատ հուզիչ պահեր: Վանքի Գրչագրաց կամ Փոքր մատենադարանը, որտեղ հայերեն էր ուսանում բանաստեղծը, ուներ մեկ պատուհան, որից երևում էին միայն պարտեզն ու ծովալճակը: Լեզվի պարապմունքներից հետո խորհրդածելու համար նա առանձնանում էր կղզու խորհրդավոր ու չքնաղ անկյուններից մեկում՝ ձիթենիների տակ: Արևելաշունչ այս կղզին, որ հիրավի դյութել էր ազնիվ պոետին, նրա քնարին տվեց նուրբ ու խորհրդավոր թրթռում, արևելյան շունչ: Դա հատկապես լավ երևում է «Չայլդ Հարոլդի ուխտագնացությունը» պոեմի չորրորդ երգում, որը, ի շարս այլ երկերի, բանասերների վկայությամբ՝ Բայրոնը երկնել է այս կղզում: Ղևոնդ Ալիշանը, թարգմանելով պոեմի այդ հատվածը հայերեն, այն անվանել է «զընտրելագույն մասն համօրէն գրուածոց նորին»:

Անգլիացի հանճարեղ պոետը իր անվան հետ գրական աշխարհում համբավեց նաև հայության ու հայ մշակույթի անունը, նպաստեց հայագիտության տարածմանն ու զարգացմանը: Այդ ժամանակներից ի վեր ս. Ղազարի հայաշունչ կղզին գրական ուխտավայր է դարձել նաև Բայրոնի բազմամիլիոն երկրպագուների համար: Այսօր Վենետիկ գնացող յուրաքանչյուր ոք, Դոժերի պալատից և Ռիալթոյի կամրջից զատ, իր նպարտքն է համարում այցելել այս կղզին, որտեղ պահվում են «համաշխարհային վշտի երգչի» կենդանի հիշատակները, տեսնել «Բայրոնի սենյակը», նրա հայատառ ստորագրությունը, որով, ինչպես Խաչիկ Դաշտենցն է պատկերավոր գրել, Բայրոնը «իր անունը հավիտենապես դրոշմել է մեր ազգի սրտի վրա և նրա դպրության ոսկե մատյանում»:

Հովհաննես Այվազովսկու «Բայրոնի այցը ս. Ղազար կղզի. Վենետիկ» կտավը, որ, անտարակույս, Հայաստանի պետական պատկերասրահի գանձերից է, հայ ժողովրդի երախտապարտ ոգու հարգանքի տուրքն ու շռայլ սիրո մի արտահայտությունն է հանճարեղ բանաստեղծ Բայրոնի նկատմամբ:

ԳԱՐԵԳԻՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

## Հայկական գորգ

Չորս պատերի մեջ ծաղիկն է բուրում,
Եվ քո հայացքը սահում է խաղաղ
Դաշտերի ազատ լռության միջով՝
Դեպի գույների ակունքը բացված՝
Ճկուն մատների շոյանքից թեթև:
Ուր ծաղիկների խոնարհ ուսերին
Հարսնության գույնով երկինքն է իջել՝
Ջահել աղջկա պատրանքից պոկված:
Դաշտի կենտրոնում՝ կանաչ հողաթումբ,
Քամու շոյանքից փռված ժպիտներ,
Որոնց մոգական կանչին հնազանդ,
Արևի վերջին շողը թևերին՝
Կապտածիր լեռան կատարից ահա
Արծիվն է իջնում՝ ուժասպառ ու ծեր:

## Աշնան ծաղիկ

Թերթերը քո հազարատես
Սահեցին վար, իջան գետին,
Ընծայեցիր բուրմունքդ մեզ՝
Ոսպես թե խոսք հրաժեշտի:

Քեզ չեմ պոկի էլ քո թփից,
Աշնան խոնարհ, գունատ ծաղիկ,
Վերջին համբույրն առ արևից
Ու նինջ մտիր գրկում հողի:

Որ երբ բացվի դուռը գարնան՝
Ծաղկես կրկին բուրումնավետ.
Այնժամ որքան ձեռք կուզենա,
Պոկել ու քեզ տանել իր հետ:



ՄՈՒՇԵՂ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ ք. Լենինական




ՍԱՍՈՒՆ ՂԱԼԱՅԱՆ ք. Ստեփանակերտ

●●●

Մի խաղաղ գիշեր,
Մի մթին գիշեր
Աստղերը դարձան
Ճերմակ փաթիլներ:

Ու մոլորվելով, ճամփին լույսի տալով,
Մի շրջան կազմած,
Կլոր պար բռնած,
Հանգիստ իջան ցած:

Մինչև ուշ գիշեր նրանք պարեցին,
Իսկ հետո՝ նորից վեր շտապեցին:
Ու մինչև օրս էլ թռչում են նրանք
Մեկ՝ դեպի երկինք, մեկ էլ՝ դեպի ցած:

ՔՐԻՍՏԻՆԵ ՎԱՐԴԱՆՅԱՆ
Երևան, № 170 դպրոց, 7-րդ դաս.

●●●

Տատիս նման ծերացել,
Տատիս նման կռացել,
Տատիս նման գունատվել,
Ձորացել է ծառը:

Եվ հուշերով իր անդարձ,
Ինչպես տատիս աչքը թաց,
Քամու ձեռքին խեղճացած՝
Մերկացել է ծառը:

ՎԱՐԴԱՆ ՔԵՐՈԲՅԱՆ
Արթիկ, № 2 դպրոց, 4-րդ դաս.

●●●

Ձմեռն է եկել
Բուք ու բորանով,
Ամեն ինչ ծածկել
Ճերմակ սավանով:

Անտառն է մրսում
Սառնամանիքից,
Իսկ տոնածառը
Քրտնում է շոգից:

Նա զուգված տեսքով
Տխուր է նորից,
Չէ՞ որ հեռու է
Հարազատներից:

ՆԵԼԼԻ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ
Գորիսի շրջան, Հարթաշենի միջնակարգ դպրոց, 9-րդ դաս.

# Ազնվություն

(Կիրովական քաղաքի Ստ. Զորյանի անվ. № 22 դպրոցի աշակերտների շարադրություններից)

Ես արդեն տասնյոթ գարուն եմ ապրել: Եվ այդ ոչ կարճ ժամանակամիջոցում չեմ հանդիպել «լրիվ» ազնիվ մարդկանց: Ինչո՞ւ: Ո՞վ է մեղավոր: Ո՞վ եղավ պատճառը, որ ազնվությունը մոլորվեց մութ անտառում: Այս հարցերն են, որ հուզում են ոչ միայն ինձ, այլ արդեն նաև մեր ողջ ժողովրդին: Հիմա ավելի շատ են խոսում ազնվության, ճշմարտության մասին: Բայց որքան շատ են աղաղակում, այնքան ավելի թերահավատ ժպիտով ես նայում այդ ամենին: Ոչ, ես հոռետես չեմ: Բայց սարսափում ես, երբ չես հանդիպում ազնիվ մարդկանց, որոնց օրինակը հիմայեր քեզ, դարձներ Մարդ: Վերցնենք կյանքի ցանկացած բնագավառ: Կյանքի ոչ մի անկյուն զերծ չի մնացել կեղծիքից, անազնվությունից, որոնք խեղաթյուրում են մարդու էությունը, կործանում բերում նրան: Գրականության դասերին մենք հաճախ ենք դատապարտում այս կամ այն հերոսին, նրա անազնիվ արարքները արժանանում են մեր «աչալուրջ» քննադատությանը: Բայց ինչո՞ւ մենք չենք ուզում տեսնել, որ դրանցից վատթարագույնները ապրում են մեր մեջ:

Հնարավոր է, որ ինձ հարցնեն. «Իսկ դու ինքդ ազնի՞վ ես»: Ես կասեմ, որ հիմա չեմ կարող ինձ դասել ազնիվների կամ անազնիվների շարքում: Ինչո՞ւ: Որովհետև ես դեռ սովորում եմ դպրոցում, որտեղ եթե ոչ լրիվ, ապա ինչ-որ չափով ազնվության որոշ պաշար կա: Եվ այդ պաշարից դպրոցը կաթիլներ է բաժին հանում աշակերտներին, որոնք, ավաղ, կորչում են կյանքի դժվարությունների մեջ խորանալուն զուգընթաց: Մենք բոլորս կանգնած ենք այն ճամփաբաժանին, որից տարբեր ճանապարհներ են գնում դեպի կյանք: Ու սարսափում ես, որ տարիների փայփայած երազանքդ կարող է մնալ կես ճանապարհին, ու դու զոհ դառնաս ինչ-որ մարդկանց անազնվությանը: Ինչո՞ւ պետք է ուսանողի նստարանին հայտնվի նա, ով իրոք որ արժանի չէ դրան, ով զբաղեցրել է նրա տեղը, ում համար դա եղել է տարիների երազանք, երազանք, որ փշրվել է կես ճանապարհին: Ինչո՞ւ:

Ազնվությունը, որ թվում է, թե պիտի պահպանված լինի գոնե մանկապարտեզում, նույնպես բացակայում է: Մեծացող երեխան տեսնում է, թե ինչպես դաստիարակը տարբերություն է դնում լավ և վատ «ապահովված», ինչ-որ հովանավորողների պաշտպանության տակ գտնվող երեխաների միջև: Եվ կատարվում է սարսափելին: Երեխայի հոգեբանության մեջ ծիլեր են տալիս նյութականից բխող ինչ-որ հարցեր, որոնք տարիների հետ մեծանում և կանգնում են նրա առաջ՝ իրենց ողջ սրությամբ: Ինչո՞ւ մենք աչք ենք փակում այս ամենի հանդեպ: Երևի նրա համար, որ ավելի շատ թշնամիներ է վաստակում նա, ով քարոզում է ճշմարտությունն իր ամբողջ մերկությամբ: Եվ մարդիկ գերադասում են լռել:

Այս ամենից հետո թվում է, թե պետք է իջնի այն միտքը, որ իբրև թե ճշմարտությունը, ազնվությունը «կորել» են հավետ: Ոչ: Մենք հավատում ենք, որ ինչքան էլ դժվար լինի ազնվության քարքարոտ ճանապարհը, այնուամենայնիվ, այն պետք է հաղթի: Լավատեսորեն նայենք ապագային, քանզի միշտ էլ լավատեսությունն է օգնել մարդուն այն դժվար պայքարում, որի մեջ գտնվելն է ցանկալին:

**ՄԱՐԻՆԵ ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆ**

Ազնվություն և անազնվություն...

Որքան տարբեր իմաստ ունեն այս երկու հակադիր հատկանիշները, որոնք ա-

ռաջացել են մարդկության ստեղծման օրից և կհարատևեն մինչև ոչնչանա մարդը: Բայց դարեր շարունակ այս հատկանիշներից երկրորդը՝ անազնվությունը, գնալով ավելի է իր ճանկերը թաղում հասարակության մեջ, որքան զարգանում է մարդու գիտակցությունը, այնքան հետզհետե թվում է, թե ոչնչանում է ազնվությունը, և անազնիվն ավելի մեծ տեղ է գրավում կյանքում, դուրս վռնդելով իրենից հազար անգամ արժանավորին, հասարակության համար ավելի պիտանիին: Սակայն մեր առօրյա փորձից յուրաքանչյուրս շատ լավ հասկանում ենք, որ մարդու կատարած ազնիվ արարքը անմիջապես նկատվում է և գնահատվում, իսկ անազնվությունը՝ ոչ: Եվ անազնվությունը այնքան շատ է մեր շրջապատում, որ թվում է՝ դարձել է սովորական՝ բոլորի համար:

Ազնիվը կյանքում չի գտնում իր տեղը: Ինչո՞ւ, մի՞թե նա մեղք ունի, որ չի կարող իր ընկերոջը խաբել, կործանելով շատերին՝ զբաղեցնել նրանց տեղերը և վերջապես փողով գնել մարդու ամենամեծ սրբությունները: Ոչ, մենք՝ պիոներներս, կոմերիտականներս, տեսնելով մեր կողքին կատարվող հակահասարակական, հակասոցիալիստական անազնվությունները, որոնք զրկել են մարդուն մարդ լինելուց, նսեմացրել են մարդու մարդկային հատկանիշները, պետք է պայքարենք դրանց դեմ թե՛ փողոցում, թե՛ խանութում, թե՛ հիվանդանոցում, թե՛ դպրոցում, նույնիսկ տանը: Եվ ինձ թվում է՝ օրինակներ ներկայացնելու հարկ չկա, քանի որ դրանք տեղի են ունենում ամեն րոպե, ամեն ժամ, ամեն օր, անընդհատ: Փոքր ժամանակ երեխան խաբում է ծնողներին, գնալով դպրոց՝ ուսուցիչներին, աշխատանքում՝ ընկերներին, և այսպես շարունակ խաբելով բոլորին, նա խաբում է իրեն, չճանաչելով մարդկային ազնիվ, իսկական կյանքը:

Դե, ուրեմն եկեք բուժենք մարդուն, մինչև այժմ անբուժելի համարվող հիվանդությունից:

**ԴԱՎԻԹ ԴԱՎԹՅԱՆ**
**8-րդ դաս.**

● Հաճախ ինքս ինձ հարց եմ տալիս, ի՞նչն է բնութագրում մարդուն դրական, ի՞նչն է մարդուն դարձնում վեհ, գեղեցիկ: Պատասխանը մեկն է՝ ազնվությունը...

Ազնիվ մարդ... Դարերում ես փառաբանվել դու, հասել ես մեր օրերը, սրբացել ու դարձել ես մեծ: Քո մեծության առջև խոնարհվում է ողջ մարդկությունը: Քո շնչից ոչնչանում է գաղջ եսասիրությունը, ծանր դաժանությունը, կեղծ ժպիտը փառամոլի: Դու ես այն հիմքը, այն հողը, որի վրա կառուցված է աշխարհը, դու կյանքին տալիս ես իմաստ, սերունդներին խոստանում պայծառ գալիք:

Ով ազնվություն... Նման ես դու գարնան շնչի թարմությանը, որը կենսունակություն է հաղորդում մարդկային կյանքին, այն դարձնում է իմաստուն ու բաղձալի: Ինչո՞ւ քո կողքին տեղ են գտնում կեղծությունը, ստը, խաբեությունը, գուցե նրա՞ համար, որ ընդգծեն քո մեծամեծ առավելությունը:

Խոնարհվում եմ քո առջև և ուզում եմ, որ դու լինես միակ սիրելին համայն աշխարհի, որ քո ոսկեգույն փայլը չխամրի ու մնա երբեմնի հավատով, որ դու հավերժ, լինես, անխոցելի ու լուսավոր-լուսավոր ուղի սփռես գալիք սերունդների առջև:

**ԼՈՒՍԻՆԵ ՌՈՍՏՈՄՅԱՆ**
**7-րդ դաս.**

...Ազնիվ ընկերը թանկ է եղբորից,
Ու նրա սերը՝ սիրտ հուզող գինի...
Ա. ԾԱՏՈՒՐՅԱՆ

● Կա ազնվություն, ուրեմն՝ կա ջերմ ընկերություն, հոգեկան անդորր, արդյունավետ աշխատանք, ներդաշնակ կյանք:

Տարրական դասարաններում ազնիվը նա էր, ով շատ էր հուշում ընկերոջը: Դա, մեր կարծիքով՝ օգնություն էր ընկերոջը: Մենք ևս ոչ միայն չէինք դատապարտում, այլև սիրում էինք նրան: Թեև տանը՝ ծնողները, դպրոցում՝ ուսուցիչները բացատրում էին, որ դա ազնվություն չէ, բայց մեր խելքին այնքան էլ հասու չէր այդ:

Այլ է այժմ: Ես հասկանում և գնահատում եմ ավագների ավանդը, նրանց դիրքը բարության, չարիքի ու անարդարության հանդեպ: Մեծ խորհուրդ ունի «ազնվություն» բառը: Իմ կարծիքով՝ այն իր մեջ ներառում է և՛ խիղճը, և՛ արդարությունը, և՛ հոգու վեհությունն ու հարըստությունը: Սիրում եմ ազնիվ մարդկանց: Երբ կինոնկարներում ականատես եմ լինում ազնիվ արարքների, ինձ ուժեղ եմ զգում, համարձակ, կյանքն ավելի է գեղեցկանում, ջերմանում... Ուրեմն, աշ-

խատանքը, ձգտումը, լավ արարքը չի կորչի, կգնահատվի, չարը չի կարող խոչընդոտել քո ուղին: Որքան եմ ուզում նմանվել ազնիվ մարդկանց, աչքի ընկնել ազնվությամբ... Սակայն, առօրյա կյանքում ազնվությունը դրսևորվում է ամենատարրական, սովորական արարքներում: Իմ ընկեր Սմբատի հետ գնացել էինք խանութ՝ հաց գնելու: Վաճառողը Սմբատին մանրն ավել էր տվել: Նոր էինք դուրս եկել, երբ ընկերս խայթվածի նման ետ դարձավ և ավել դրամը ետ տվեց:

— Ջուր, այն էլ գործակատարի՞ն, ինչո՞ւ ետ տվեցիր,— լսեցինք համադասարանցի Արմենի ձայնը:

— Հանգիստ չէի քնի, ինքս իմ աչքից կընկնեի,— հանգիստ, բայց սառը պատասխանեց Արամը:

Մի ուրիշ անգամ, բակում խաղալիս մեր նետած գնդակն ընկավ հարևանի պարտեզը, և կոտրվեց մի գեղեցիկ ծաղիկ: Սմբատը շտապեց հայտնելու այդ մասին: Հարևանի հարցին, թե ով էր գնդակը նետել, Սմբատը մի պահ խորհեց և պատասխանեց՝ ես: Իհարկե, հետո պարզվեց ով էր... Մենք սպասում էինք, որ խնկական գցողը կմիջամտեր, բայց ոչինչ չասաց: Մենք, իհարկե, կըշտամբեցինք նրան, պարտեզի տիրոջն ասացինք ճիշտը: Սրանք, թվում է, մանրուքներ են, բայց, ինչպես հայրս է ասում, փոքր գործ կատարողը մեծանա, մեծն էլ կանի: Փոքրից են սկսում և հասնում մեծին, վսեմին, դառնում խիզախ հետախույզներ, քաջ սահմանապահներ, անձնվեր հայրենասերներ, ուսման, աշխատանքի առաջավորներ:

**ԱՐԹՈՒՐ ՂԱՄԲԱՐՅԱՆ**
**7-րդ դաս.**

«Երիտասարդությունը միշտ գեղեցիկ է, եթե նա ճիշտ է դաստիարակվում, ճիշտ է ապրում, ճիշտ է աշխատում, ճիշտ է ուրախանում»:

ՄԱԿԱՐԵՆԿՈ

Յուրաքանչյուր մարդ պետք է այնպես ապրի, որ մի հետադարձ հայացք նետելով իր անցած ուղուն, չափսոսա ապրած օրերի համար, խղճի խայթ չունենա աննպատակ անցկացրած ժամերի համար, որպեսզի ապրած յուրաքանչյուր օրը բերկրանքով ու հրճվանքով լցնի նրա հոգին, կատարած լավ գործերը հիշելիս ցանկանա ապրել ու ապրել:

Յուրաքանչյուրը պետք է հասկանա և տեսնի մարդկային այն ներքին գեղեցկությունները, որոնք իրենց մեջ բովանդակում են մարդկային կատարյալ և ազնվաբարո արարքներ, ամբողջությամբ վերցրած՝ վարքագիծ:

Մարդկային որակներն արտահայտվում են դեպի գործը, աշխատանքը, մարդիկ, բնությունը, սեփականությունը ունեցած մերաբերմունքի մեջ: Սակայն մարդը երբեք միայնակ չի լինում: Որքան ավելի հասուն և գեղեցիկ է կոլեկտիվը, այնքան գեղեցիկ և բովանդակալից է անհատը:

Մարդու ձգտումը դեպի վեհը՝ բորբոքում է նրան, նրա մեջ ծնում գեղեցիկը, և նա ինքը դառնում է այդ գեղեցիկի կրողը:

Ազնվությունը մյուս բարոյական որակների հետ միասին ի վերուստ տրված շնորհք չէ, այն ձեռք է բերվում կյանքում: Եվ մի՞թե քիչ են մեզանում անազնիվ մարդիկ: Չէ՞ որ միշտ չէ, որ նկատում ու գնահատում ենք այդ վեհ հատկությունը: Որքան շատ լինեն ազնիվ մարդիկ մեր շրջապատում, այնքան կյանքը գեղեցիկ կլինի և ապրելը հեշտ: Ուժեղ, արի, հայրենասեր, ուրիշների համար ապրող մարդը չի կարող ազնիվ ու գեղեցիկ չլինել:

**ԱՆՈՒՇԱՎԱՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
**7-րդ դաս.**

Խանութում գնումներ կատարելիս վաճառողը խաբում է քեզ: Հիվանդանոցում մեկին բուժում են արտասահմանյան դեղերով, իսկ նրա կողքին պառկածին անուշադրության են մատնում: Մեր տան մոտ ապրող երկու հարևաններն էլ աշխատում են: Մեկը լավ է ապրում, ամեն ինչով ապահովված է, մյուսը նույնիսկ օրվա հացի համար դրամ չի ունենում: Մի՞թե այս ամենի մեջ արդարություն կա: Նույնիսկ մեր դպրոցում այնպիսի աշակերտներ կան, որոնք վատ են սովորում և անազնիվ են: Մեզ ասում են ազնիվ եղեք: Դպրոցում մի բան են սովորեցնում, դրսում լսում ու տեսնում ենք մի այլ բան...

**ՍՈՆԱ ՄԱՐՈՒՔՅԱՆ**
**6-րդ դաս.**

Ազնվությունը մարդու բնավորության գլխավոր գիծը պետք է լինի: Այն մարդը, որ ազնիվ է, աշխատում է ճիշտ գտնել իր տեղը կյանքում: Ազնիվ մարդիկ



շատ կան, բայց կան նաև անազնիվները։ Իմ կարդացած պատմվածքներից մեկը հիշեցի։ Մի աղքատ մարդ գնում է ծառ կտրելու, և հանկարծ նրա կացինն ընկնում է ջուրը։ Մի ծերունի գալիս և հարցնում է՝ ի՞նչ է պատահել։ Լսում, մտնում է ջուրը և դուրս է բերում մի ոսկե կացին։ Հարցնում է աղքատին՝ սա քո՞նն է։ «Ոչ, իմը չէ,— պատասխանում է աղքատը»։ Ծերունին նորից է սուզվում ջուրը և այս անգամ էլ դուրս է բերում... մի արծաթե կացին ու նրկին հարցնում. ա՞յս է։ Ոչ,— պատասխանում է աղքատը։ Եվ երբ վերջին անգամ ծերունին դուրս է բերում իսկական կացինը, կացնի տերը պատահածը գնում և պատմում է իր ընկերներին։ Ընկերներից մի անազնիվ մարդ գնում, իր կացինը դիտմամբ գցում է ջուրը, և այն մարդը հայտնվելով, հանում է մի ոսկե կացին։ Նա հրապուրվելով ոսկով, պատասխանում է, որ դա իրենն է։ «Ոչ ոսկի կացինը կստանաս և ոչ էլ քո կացինը»,— ասում է ծերունին ու անհետանում։

Եվ արդարությունը նման է մի ծերունու, որ մարդկության պատմության նման հին է, և նա ազնիվ մարդուն միշտ վերադարձնում է իր կորցրածը։

**ԱՆԺԵԼԱ ԱԶԱՏՅԱՆ**

**5-րդ դաս.**

Որտեղ կա ազնվություն, այնտեղ էլ՝ խաղաղ մթնոլորտ, գեղեցիկ ընտանիք, լավ դաստիարակված երեխաներ, որոնք հայրենիքի համար պիտանի մարդիկ կըդառնան։ Ես կցանկանայի բոլոր երկըրներում, բոլոր ընտանիքներում թևածի ազնվությունը, որ լինի միշտ խաղաղություն, կապույտ, շատ կապույտ երկնքում ճախրեն ճերմակ-ճերմակ աղավնիները, և իմ հասակակից երեխաները իրենց աչքերով տեսնեն փյունիկ թռչունը։

**ԱԻԴԱ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**

**5-րդ դաս.**

«Ստախոսն ու ճշմարտախոսը» պատմըվածքում երկու եղբայր են լինում, նըրանք գնում են անտառ և չեն նկատում երբ է անցնում օրը։ Արդեն գիշեր է լինում։ Եվ նրանք երկուսով սկսում են մտածել, թե ինչ ասեն մայրիկին, որ իրենց վրա չբարկանա։ Մեծ եղբայրը ասում է, որ ինքը կասի, թե ճանապարհին տեսան իրենց պապիկին, դրա համար էլ ուշացել են, իսկ փոքր եղբայրը ասում է,

որ ինքը կասի միայն ճիշտը: Վերջապես նրանք հասնում են տուն: Նրանց վրա մայրը բարկանում է և հարցնում է, թե ինչու այսքան ուշ եկան տուն: Այդ ժամանակ մեծ եղբայրը առաջ է ընկնում և ասում է, որ իրենք ճանապարհին տեսել են պապիկին և դրա համար էլ ուշացել են: Մայրը նրան հավատում է և չի բարկանում: Փոքրն ասում է, որ իրենք չեն տեսել պապիկին, այլ չնկատեցին, թե ինչպես է անցել օրը: Եվ, երբ մայրը իմանում է, որ մեծ եղբայրը ստել է, նրան պատժում է: Փոքր եղբոր վրա բարկանում է, բայց ներում:

Նախահեղափոխական տարիներին շատ մարդիկ կային, որոնք ժլատ, անազնիվ էին: Դրանք վաճառականները, կապիտալիստները և կալվածատերերն էին: Նրանք ճնշում էին միամիտ, ազնիվ, բարեհոգի մարդկանց, բանվորներին, գյուղացիներին: Եվ Վ. Ի. Լենինը պայքարում էր, որպեսզի բոլորը լինեն ազնիվ, և նրա երազանքը կատարվեց: Կատարվեց հեղափոխությունը, և մարդկանց կյանքը ավելի հեշտացավ: Բանվորները կապիտալիստների գործարաններում աշխատում էին առանց դադարի, իսկ հիմա նրանք ունեն հանգստի ժամ, աշխատում են լուսավոր սենյակներում և այդ սենյակներում թթվածնով առատ օդ կա: Երբ հեղափոխությունից առաջ գյուղացիները չունեին հողամաս, աշխատում էին կալվածատիրոջ հողում, իսկ հետո ամեն գյուղացի ստացավ հող և նրանք սկսեցին իրենք իրենց ազնիվ քրտինքով մշակել հողը:

Հեղափոխությունից անցել է շուրջ 70 տարի և այսօր մենք ապրում ենք մի այնպիսի ժամանակաշրջանում, որ անկասկած յուրաքանչյուր անձ պետք է լինի ազնիվ, խոհեմ, ճշմարտախոս, չէ՞ որ այսօր վերակառուցումն է մեզանից այդ պահանջում: Հարկավոր է ապրել այսօրվա պահանջներով: Հարկավոր է վերջ տալ բյուրոկրատիային ու խաբեբայությանը: Քննադատաբար պետք է մոտենալ յուրաքանչյուր երևույթին: Իմ կարծիքով՝ այդ բանը պետք է սկսենք մեր դասարանից, ինքներս մեզանից: Չէ՞ որ մեզ մոտ էլ կան թերություններ, որոնք հակասում են դպրոցական ռեֆորմին: Վերացնելով այդ բոլորը՝ օգնած կլինենք վերակառուցման մեծ գործին:

**ՀԱՍՄԻԿ ՄԱՐՈՒՔՅԱՆ**
**4-րդ դաս.**

Վաղարշ (կամ Վաղարշակ) Երկրորդ Արշակունու գահակալության ժամանակ Մեծ Հայքի թագավորությունն ավելի ամրապնդվեց: Դրա պատճառը ոչ այնքան հայերի ռազմական հզորությունն էր, որքան Վաղարշ II-ի դիվանագիտական հմտությունը:

Վաղարշը թագաժառանգ եղած ժամանակ (նա հայոց Վաղարշ I թագավորի թոռն էր) հմտացել էր պետական ու քաղաքական գործերի մեջ: 190-ական թվականներին Հռոմի կայսր Պեսկեննիոս Նիգերը հայոց թագավորից պահանջեց զորք՝ հռոմեական գահի հավակնորդ, իր հակառակորդ Սեպտիմիոս Սևերոսի դեմ կռվելու համար: Վաղարշ II-ը Նիգերի ուղարկած դեսպանին մերժեց զորք տալ: Ըստ վկայության՝ նա ասել է՝ «Ես ոչ ոքի չեմ օգնելու, բայց եթե Սևերոսը ինձ վրա հարձակվելու լինի, պատրաստ եմ երկիրը պաշտպանելու»: Հայաստանի հարևան մի քանի երկրներ՝ Օսրոյենեն, Հատրենեն, Նիգեր կայսրին զորք տվեցին, Պարթևստանը ևս խոստացավ զորք տալ:

Այնպես եղավ, որ Հռոմի երկու ախոյաններից հաղթեց Սևերոսը, որը որոշեց վրեժ լուծել բոլոր նրանցից, ովքեր օգնել են իր պարտված ախոյան Նիգերին:

Նոր կայսրը՝ Սևերոսը, զայրույթով լի արշավեց դեպի Արևելք՝ Նիգերին օգնություն ցույց տված երկրներին պատժելու նպատակով: Նա ուզեց Հայաստանի միջով գնալ դեպի Միջագետք: Իսկ դա նշանակում էր ոտնահարել Հայաստանի անկախությունը, հայոց քաղաքները կողոպուտի ենթարկել: Եվ Վաղարշ II-ը, որ չէր օգնել Սևերոսի թշնամուն, մարդ ուղարկեց հայոց սահմանի մոտ դիմավորելու Հռոմի կայսրին: Հայերը նրան թանկարժեք նվերներ, շատ դրամ մատուցեցին և հայտնեցին հայոց թագավորի խոստումը զորքով օգնել իրեն՝ Սևերոսին, լինել նրա հետ բարեկամ: Սևերոսը չմտավ Հայաստան: Այսպես Վաղարշ II-ը իր հեռատեսությամբ և բազմահմուտ դիվանագիտությամբ փրկեց Հայաստանը հռոմեական արշավանքից:

Ավելին. տվյալներ կան, որ հայոց մայրաքաղաք Վաղարշապատում երկար ժամանակ գտնված հռոմեական զորամասը Վաղարշ II-ի ժամանակ դուրս է եկել Հայաստանից:

Մովսես Խորենացին հայոց Վաղարշ (Վաղարշակ) թագավորի մասին գրել է.



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

### ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# Հայ Արշակունիների հաջողությունները

«Ուրիշները լոկ ապրել են, բայց ես ասում եմ, որ նա մահից հետո էլ է ապրում իր բարի անունով»: Ուրեմն, Վաղարշը սիրվել է հայ ժողովրդի կողմից ի նըպաստ հայրենիքի վարած իր հմուտ քաղաքականության համար:

Իսկ Սևերոսը այլ ճանապարհով մըտավ Միջագետք և խիստ պատժեց այնտեղի Ադիաբենե և Հատրենե պետությունները, որոնք Պարթևստանի գերիշխանության տակ էին: Նա այդ երկըրները միացրեց Հռոմեական կայսրությանը, որպես նրա պրովինցիաները: 198 թ. Սևերոսը գրավեց նաև Բաբելոնը և Միջագետքի Սելևկիան: Հետո գրավելով պարթևների մայրաքաղաքներից մեկը՝ Տիզբոնը, կողոպտեց ու ավերեց այն: Հռոմեական կայսրության սահմանները ընդլայնվեցին, հասան մինչև Տիգրիս գետը:

Սևերոս կայսրը հզոր էր, նա ընկճեց Հարավ-արևմտյան Ասիայի շատ երկըրներ, մանավանդ հզոր Պարթևստանը: Միայն Հայաստանն էր, որ որևէ վնաս չկրեց: Մեծ Հայքը իր սահմաններում մընում էր անկախ պետություն:

Այդ ժամանակ Հռոմը վարձ էր տալիս Հայաստանին, որպեսզի հայոց հեծելազորը պահպանի Ճորա պահակ կոչված լեռնանցքը: Դա այժմյան Դերբենդ քաղաքի անցքն է, Կասպից ծովի ափին: Այդտեղ ընդհատվում է Կովկասյան լեռնաշղթան և Կասպից ծովի ու Կովկասյան լեռների միջև ճանապարհ է բացվում:



Այդտեղով Հյուսիսային Կովկասից հեշտությամբ դեպի հարավ էին անցնում կովկասյան ռազմատենչ ցեղերը, հատկապես ալանները: Ինչպես գիտենք, Հայաստանին, Պարթևստանին, Վրաստանին, Աղվանքին, նաև Հռոմեական կայսրությանն այդ ցեղերը մեծ վնասներ էին տալիս:

Նախկինում Հռոմի լեգեոններն էին պահպանում Ճորա պահակը և Կովկասյան լեռների մյուս անցքերը, իսկ Սեվերոսի ժամանակ Հռոմը սկսեց հայերին դրամ տալ, որ պահպանեն այդ ճանապարհը: Դա, ըստ երևույթին, Հռոմին ավելի ձեռնտու էր:

Հայկական հեծելազորը հզորանում էր, այն գտնվում էր հայոց սպարապետի հրամանատարության տակ: Մեծանում էր նաև սպարապետի դերը հայոց մեջ:

Սակայն միշտ չէ, որ հայոց հեծելազորին հաջողվում էր Կովկասի լեռնականների ճանապարհը փակել: Վաղարշ II-ի ժամանակ ալաններին միացել էր մասկութ կոչվող ռազմամոլ, թափառական ցեղը: Եվ ահա 196 կամ 198 թվականին (ստույգ թվականը որոշել դժվար է), Հյուսիսային Կովկասից լեռնականները Ճորա պահակով ներխուժեցին Հարավային Կովկաս: Վաղարշ II-ը մեծ զորքով հարձակվեց նրանց վրա, ջախջախեց և ետ շպրտեց Ճորա պահակից դեպի հյուսիս: Ապա ինքն իր զորքով անցավ լեռնանցքով դեպի հյուսիս: Կրկին ճակատամարտ տեղի ունեցավ, հայերը դարձյալ հաղթեցին, բայց լեռնականների արձակած նետերից մեկը սպանեց հայոց թագավորին:

Հայաստանում Վաղարշի փոխարեն գահ բարձրացավ նրա որդի Խոսրով Առաջինը: Սա նախ որոշեց հոր վրեժն առնել և իր զորքով արշավեց դեպի Հյուսիսային Կովկաս: Հաղթեց լեռնականներին, վերադարձավ Հայք և ի նշանավորումն այդ հաղթանակի՝ կանգնեցրեց արձան: Խոսրովի թագավորության շրջանում (211 թվականին) Հռոմի կայսր դարձավ Անտոնիոս Կարակալան: Նա իրեն համարում էր նոր Ալեքսանդր Մակեդոնացի և ծրագրել էր վերականգնել Ալեքսանդրի կայսրությունը: Նա իր որոշ նախորդների նման ծրագրել էր վերացնել նաև Մեծ Հայքի թագավորությունը և Հայաստանը ևս դարձնել հռոմեական պրովինցիա:

215 թ. Կարակալան գրավեց Օսրոյենեն, որի մայրաքաղաք Եդեսիայում գերի վերցրեց այս երկրի թագավորին: Հետո սիրալիր նամակով իր մոտ կանչեց հայոց Խոսրով թագավորին և ձերբակալեց նրան ու հայոց թագուհուն:

Այս խաբեությունից զայրացած հայերն ապստամբեցին: Կարակալան հայերի դեմ ուղարկեց զորք՝ Թեոկրիտես զորավարի առաջնորդությամբ: Հայերը ջախջախեցին հռոմեական լեգեոնները և Հայաստանից դուրս քշեցին:

217 թ. հայոց Խոսրով թագավորը բանտում մահացավ: Հայաստանում գահ բարձրացավ Խոսրովի որդի Տրդատը: Նույն թվականին Կարակալան արշավանք սկսեց պարթևների դեմ: Բայց շուտով սպանվեց իր մի զինվորի ձեռքով: Նրա փոխարեն Հռոմի կայսր դարձավ Մակրինոսը: Սա պարտություններ կրեց պարթևներից, որոնց թագավորն էր Արտավան V-ը: Մակրինոսը ստիպված էր Կարակալայի նվաճած հողերի մի մասը զիջել պարթևներին և վճարել մեծ ռազմատուգանք:

Հայաստանին սիրաշահելու համար Մակրինոսը Տրդատ II-ին ոսկե թագ նվիրեց, վերադարձրեց խլված հայոց գանձերը, բանտից ազատեց Խոսրով թագավորի կնոջը՝ հայոց թագուհուն (Տրդատ II-ի մորը): Հայկական գործերը հաջող էին գնում, սակայն Հայաստանին նոր, մեծ հարվածներ էին սպասվում, այս անգամ՝ արևելքից:

Մինչ Պարթևստանի վերջին թագավոր Արտավան V-ը հաղթանակներ էր տանում հռոմեացիների նկատմամբ, պարթևների թագավորական տան դեմ դավ էր պատրաստվում Պարթևստանին ենթակա Պարսում (Պարսկաստանում): Պարսից Սասանի ցեղից Արտաշիր Պապականը 224 թ. ապստամբեց պարթևների թագավորական տան դեմ, հաղթեց ու իրեն հռչակեց ամբողջ երկրի թագավոր: Պարթևների Արշակունյաց թագավորական տունը ընկավ: Ասպարեզ եկավ պարսից Սասանյան թագավորական տունը, որը հակառակորդ էր բոլոր Արշակունիներին: Սասանյանները նպատակ դրեցին վերացնել նաև հայոց Արշակունիների թագավորական տունը: Այդպես, արևելքից Մեծ Հայքի անկախությանը սպառնացող նոր վտանգ գոյացավ:

Շուտով սկիզբ էին առնելու հայ-պարսկական անընդհատ ծանր պատերազմները:

(շարունակելի)

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

## Նոր երազ

Այսօր մի նոր երազ տեսա՝
Մի մանուկ էր ճչում...
Դևերն էին շուրջը նրա
Պարում ու քրքջում:
Մանկան իրեն կտրատում էր,
Մորն էր անվերջ ուզում,
Դևերը թե՝ բավակա՛ն է,
Մի՛ աղմկիր իզուր:
Մերն ես հիմա, մենք ինչ ուզենք՝
Պիտի դու կատարես:
Թե չէ, ճուտիկ, լավ իմացիր,
Հում-հում կուտենք մենք քեզ:
Սակայն, իզուր, չէին ազդում
Սպառնալիք ու ահ.
Մանկան համար կարծես չկար
Ոչ ահ ու ոչ էլ մահ:
Եվ դևերը որոշեցին
Խաբել, սիրտը շահել.
Խաղալիքներ նվիրեցին,
Ասին՝ լավ կպահենք:
Բայց ճար չեղավ:Մանուկն էլի
Մորն էր կանչում խռով,
Եվ դևերը գոռում էին՝
Ծատ ես երախտամոռ:
Թույլ ենք տալիս, որ հագնվես,
Ուտես, խմես, շնչես...
Միայն՝ մորը քո մոռանաս,
Նրան էլ չկանչես:
Իսկ դու մեզ չես լսում դարձյալ,
Քո ասածն ես քշում...
Դուր չի գալիս մեզ բնավ նա,
Ով որ շատ է հիշում:



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մանուկն ասաց՝ դուր գամ, չգամ՝
Մորս եմ ուզում հասնել:
Իսկ չհիշել՝ քանի դեռ կամ,
Ինձնից դուք չսպասեք:
Ասաց, լռեց: Էլ չէր լալիս,
Չէր կանչում ու ճչում:
Հեքիաթի հույր մանկան նման
Ժամ առ ժամ էր աճում:
Այս որ տեսան ու լսեցին՝
Դևերն իրար անցան...
Բայց մանուկը մանուկ չէր էլ.
Վիշապաքաղ դարձավ...
...Նման երազ ով չի տեսել,
Թող որ տեսնի բարով:
Ես տեսել եմ ու տեսնում եմ
Նույնիսկ՝ բաց աչքերով:




Ռուսերենից թարգմանեց
ՍԱՄԲԱՏ ԲՈՒՆԻԱԹՅԱՆԸ

Ո՞վ է ավելի ուժեղ. մո՞ւկը, փի՞ղը, մա՞րդը, կամ, միգուցե, մրջյո՞ւնը: Մի կողմից թվում է՝ առանց համեմատելու էլ ամեն բան պարզ է: Բայց մյուս կողմից՝ եթե արդարացիորեն... Ուժը պետք է գնահատել ըստ «քաշային կարգի», և այդ ժամանակ նման պարզ հարցի պատասխանը կարող է լինել հետաքրքիր և անսպասելի:

Ահա, օրինակ, ինչպիսի ծանրություն կարող է հաղթահարել մրջյունը: Քարով փակեցին մրջնանոցի մուտքը, իսկ փոքրիկ դյուցազնը ծնոտներով բռնեց քարը և մի կողմ քարշ տվեց: Սա չափազանցություն չէ. իսկապես՝ դյուցազն: Երբ կշռեցին մրջյունին ու իր բեռը, պարզվեց, որ քարը մրջյունից ծանր է 52 անգամ: Եթե մարդը սեփական քաշից 52 անգամ ավելի ուժ ունենար, ապա նա առանց մեծ դժվարության կկարողանար քաշելով տեղափոխել մի հարկանի տունը: Իրականում նույնիսկ ուժեղ մարդիկ տեղից հազիվ են շարժում ոչ մեծ գլաքարեր՝ 400-500 կգ, որոնք իրենց սեփական քաշից միայն 5-6 անգամ են ավելի կշռում: Այսինքն՝ ստացվում է, որ մարդը համարյա 10 անգամ թույլ է մրջյունից: Իսկ ինչի՞ են ընդունակ կենդանիներից ուժեղագույնները՝ փղերը: Նրանք կշռում են մինչև 4,5 տոննա, բայց միայն 12—15 տոննա կշռող բեռներ են ընդունակ տեղափոխել, այսինքն՝ իրենց քաշից միայն 3—4 անգամ ավելի: Դուրս է գալիս՝ փղերը, համեմատաբար թույլ են մարդկանցից, իսկ մրջյունների հետ մրցելն ընդհանրապես նրանց ուժի բանը չէ:

Բայց պարտադի՞ր է արդյոք ծանրություններ քարշ տալ, երբ հայտնագործված է անիվը: Բոլորովին էլ ոչ. առավել ևս՝ երբ անիվներով տեղափոխելն ավելի հեշտ է, քան քաշելը: Դե, ի՞նչ, ուժը կարելի է չափել նաև տեղափոխման ձևերի ասպարեզում:

1,88 գրամ քաշ ունեցող արևադարձային բզեզին լծեցին սայլակին, և նա, իսկական բեռնաձիու պես, տարավ 175 գրամանոց բեռը՝ համարյա 100 անգամ ավելի իր քաշից:

Բայց դա ի՞նչ է դեռ. խխունջը թեև ոչ այնքան արագ, սակայն քարշ է տալիս իր քաշից 200, իսկ «լծված» մեղուն՝ մի հերթափոխում 300 անգամ ավելի բեռ:

Կես տոննա կշռող լավագույն ծանրաքարշ ձիերը կարողանում են քաշել 5—6 տոննա, (10—12 անգամ ավելի իրենց քաշից): Դե, իսկ մա՞րդը: Իհարկե, սայլաբեռին լծվելը մարդու գործը չէ, բայց հանուն գիտական ճշմարտության...

Անգլիացի Ջեֆ Քեյփսը, որ կշռում է մոտ 100 կգ, ուսերին է հագնում ձգափոկերը, որոնց մյուս ծայրերը կապում է յոթ տոննանոց ավտոքարշակին և քաշում է 25 մետր՝ 54,4 վայրկյանում: «Վազքի» այս ցուցանիշը, ինչ խոսք, մի ջին է, բայց տանելով իր քաշից 80 անգամ ծանր քարշակը, Քեյփսը ապացուցեց, որ կենդանիների հետ այդ մրցություններում նաև մարդն ամենևին էլ վերջին տեղում չէ:

Իսկ ինչքա՞ն բեռ կարող են տանել մարդն է ու նրա բարեկամները: Պարզվում է՝ այստեղ էլ նույն օրինաչափությունն է. ինչքան խոշոր է բեռնակիրը, այնքան հարաբերականորեն թույլ է: Գոմեշը հազիվ է շարժում ոտքերը, եթե բեռնավորված է իր քաշից 2 անգամ ծանր բեռով (մոտ մեկ տոննա): Իսկ մարդը ընդունակ է զգալիորեն ավելի շատ տանելու: Նշանավոր ռուս հսկա Իվան Զաիկինը կրկեսում կատարել է հետևյալ համարը. ջրով բերնեբերան լցրել է 40 դույլ տարողությամբ տակառը (մոտ 450 կգ), հենց ինքն էլ դրել իր ուսերին, 3 շրջան կատարել կրկեսի

հարթակում ու հետո էլ դեռ ժպտացել է: Իսկ տակառը 4 անգամ ծանր էր մարզիկից: Հանրահայտ Յակուբա Չեխովսկին ձեռքով վեր բարձրացրել և տարել է 6 բարձրահասակ զինվորի, որոնք մարզիկից մոտ հինգ անգամ ավելի էին կշռում:

Բայց այս ցուցանիշները անկարելի է համեմատել այն բանի հետ, թե ինչեր կարող են անել միջատները: Նույն բզեզը, որի մասին մենք արդեն խոսել ենք, հաջողացրել է սողալ մեջքին դրրված բեռով, որը 850 անգամ ծանր էր նրանից: Եթե մարդը կարողանար այդպիսի ուժ ցուցադրել, նա ի վիճակի կլինել իր ուսերին ամենաքիչը 20 փիղ տանի:










Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Մինչ այժմ մենք խոսում էինք մարդու և կենդանիների ուժային հեռակա մրրցումների մասին: Բայց նրանց միջև եղել են և ոչ պակաս առերես հանդիպումներ, ընդ որում՝ ոչ միայն այնպիսիք, ինչպիսիք մարդու հանդիպումը մոծակի հետ, աքլորի կամ շան: Այսպես, Ռուսաստանի ամենահանրահայտ մարզիկներից մեկը՝ ըմբշամարտի աշխարհի չեմպիոն Իվան Շեմյակինը, երկու ձեռքով կառչելով լծված սայլի անիվից, կանգնեցրել է ամբողջ ուժով սլացող ձիերին:

Հին աշխարհի որսորդներին, որոնց վրա հարձակվել են գայլեր, արջեր և նույնիսկ վագրեր, հաճախ փրկել է սեփական ուժը: Իսկ ուկրաինացի հսկա Տերենտի Կորենը 1907 թվականին Չիկագոյի կրկեսում ելույթի ժամանակ իր կամքից անկախ ստիպված էր կռվի բռնվել կատաղած առյուծի հետ, որը

դուրս էր պրծել վանդակից: Մարտը երկար չտևեց: Բացելով երախը, առյուծը նետվեց մարզիկի վրա, իսկ վերջինս իր զորավոր ձեռքերով բռնեց նրան և գետնին զարկեց այնպիսի ուժով, որ մի քանի վայրկյանից կենդանիների արքան շունչը փչեց:

Տերենտի Կորենը պարգևատրվել է իր տեսակի մեջ եզակի ոսկյա շքանշանով, որին հուշագրված է. «Առյուծների հաղթող»:

Մարդը ուժով ոչ միայն մրցում է կենդանիների հետ, այլև հնագույն ժամանակներից օգտագործում է նրանց իր ուժի զարգացման և մարզման համար: Օրինակ՝ հին Հունաստանում ուժը զարգացնում էին հետևյալ կերպ. երիտասարդը օրվա մեջ մի քանի անգամ բարձրացնում էր նորածին ցլիկին, և այդպես ամեն օր շարունակ՝ ցլիկի մեծանալուն զուգընթաց: Այսպես, հելլենները, իրենք էլ չկասկածելով, հայտնաբերել են ժամանակակից մանկավարժության ամենակարևոր սկզբունքներից մեկը՝ աստիճանականությունը: Այդ սկզբունքի շնորհիվ է, որ մկանների ամրապնդման գոր ծում նրանք կարողացան հասնել հիանալի հաջողությունների:

Անցել է ավելի քան 2500 տարի, իսկ «ցլիկի պատմությունը» կրկնվել է ուրիշ երկրում և ուրիշ հանգամանքներում: Հայրենական մեծ պատերազմն էր: Սովետական ռազմական օդաչու Իվան Կոժեդուբը թռիչքներից ազատ ժամերին, որպեսզի մարտում հեշտ լինի, ամրացնում էր մկանները, մարզվում էր՝ ավելացնելով ուժը: Իհարկե՝ ոչ մարզադահլիճներ, ոչ էլ նույնիսկ մարզաքարեր ռազմաճակատում չկային, իսկ ահա կովեր գտնվեցին: Այդ իսկ պատճառով Կոժեդուբը օգտվեց հին հույների փորձից, սկզբում հորթերին էր բարձրացնում, հետո մատղաշ ցլիկներին, իսկ հետո...

Պատերազմի տարիներին Իվան Նիկիտիչ Կոժեդուբը այնպիսի անմահ սխրագործություններ է կատարել, որ երեք անգամ պարգևատրվել է Սովետական Միության հերոսի կոչումով: Երբ վերջացավ պատերազմը, Կոժեդուբը ընդամենը 25 տարեկան էր և նա շարունակում էր իր ուժային մարզումները: Շուտով մարտական պարգևատրումներին ավելացան և սպորտայինները: Ծանրամարտում նա նվաճեց ՍՍՀՄ ռազմաօդային ուժերի չեմպիոնի կոչումը:



ԼԵՎՈՆ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ



# Խլածաղիկ

Աղքատ մարդու մեկն ուներ մի ծաղիկ:

Ջինավառ հեծելազորն անցավ այդ կողմերով:

Ինքնին հասկանալի է, որ քառասմբակ արշավող հեծելազորը պիտի անպայման ոտնակոխ աներ, տրորեր ու ջարդեր աղքատի այդ մի հատիկ ծաղիկը: Եվ մեր ասելիքն էլ պիտի հեքիաթ չդառնար...

Ուստի.

Թագավորն ուներ մի շատ գեղեցիկ ու աննման ծաղիկ: Ցողունը՝ նրբին, տերևները՝ թավշյա, ծաղկաթերթերը՝ սպիտակ և ամեն մի թերթիկի վրա՝ մի զույգ կարմիր պտիկ: Ծաղկաբաժակի մեջ էլ՝



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ամպի կապույտ մի ծվեն: Այնքան հրաշալի էր ծաղիկը, որ թագավորը պարտիզպանին հրամայեց վերացնել շրջակայքի ողջ բուսականությունը՝ թե չէ ծաղկի սնունդը կպակասի: Հրամայեց խիտ ցանցով բոլորապատել պարտեզը՝ պատերն ու երկինքը, թե չէ մեղուները բուրմունք կտանեն ծաղկից: Հրամայեց պահակազոր կարգել պարտեզն հսկելու, իսկ ծաղկի շուրջը տասնհինգ թնդանոթ տեղադրեց, որպեսզի ոչ ոքի մտքով չանցնի աչք դնել ծաղկին: Ամեն առավոտ թագավորն իջնում էր պարտեզ:

— Ծաղիկս բացվել է,— ասում էր նա:

Եվ տասնհինգ թնդանոթ միաժամանակ համազարկ էին տալիս ի պատիվ այդ իրադարձության:

— Արքայածաղիկը բացվեց,— ասում էին մարդիկ ու գնում աշխատանքի:

Ամեն երեկո թագավորն իջնում էր պարտեզ:

Եվ տասնհինգ թնդանոթ որոտմունքով ազդարարում էին այդ մասին:— Արքայածաղիկը փակվեց,— ասում էին մարդիկ ու անկողին մտնում:

— Ծաղիկս քնել է,— ասում էր նա:

Ու մի օր էլ կատարվեց այն, ինչ ոչ ոքի մտքով չէր անցնում:

Ծաղիկը հիվանդացավ:

Քիչ է ասել՝ հիվանդացավ, ծաղիկը չէր բացվում:

Ծաղկի տերևները թափվել էին, ցողունը՝ կոշտացել, ծաղկաթերթերը վերածվել էին մոխրագույն ասեղիկների:

Թնդանոթները լուռ էին: Ժողովուրդը մնացել էր քնած:

Ծաղկաբույժներ հրավիրվեցին աշխարհի չորս ծայրերից: Քննեցին, զննեցին և ախտորոշեցին.

— Արքայածաղիկը խլացել է:

— Ինձ խլածաղիկ պետք չէ,— որոտաց թագավորը և հրամայեց ծաղիկը շպրտել պարտեզի սահմաններից շատ հեռու:— Իսկ երկրիս կարգը չպիտի խախտվի:

Եվ նորից կյանքն իր նախկին հունով ընթացավ: Մարդիկ քնում և արթնանում էին թնդանոթների միաժամանակ համազարկով:

Իսկ ծաղի՞կը...

Մի աղքատ մարդ անցնում էր պարտեզի մոտերքով: Տեսավ փոշու մեջ ընկած ծաղիկը: Տարավ ու տնկեց իր տան առջև: Ջրում էր, խնամում, գուրգուրում, և ծաղիկը բացվեց:

Ճիշտ է, նա այլևս տերև չուներ, ճիշտ է, ցողունը չնրբացավ, և ծաղկաթերթերն էլ նման էին վուշե ասեղիկների, բայց և այնպես ծաղիկը բացվել էր:

Թագավորն իմացավ այդ մասին և մի հեծելազոր ուղարկեց:

Հասկանալի է, որ քառասմբակ արշավող հեծելազորը պիտի անպայման ոտնակոխ աներ, տրորեր ու ջարդեր աղքատի այդ մի հատիկ ծաղիկը և մեր ասելիքն էլ պիտի հեքիաթ չդառնար...

Բայց քամին տարավ վուշե ասեղիկները, և հաջորդ գարնանը երկրով մեկ խլածաղիկներ բացվեցին՝ անթիվ, անքանակ խլածաղիկներ:



# ԲՈՒՅՍԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մարդու զգացմունքների, ընդհանրապես, հուզական աշխարհի վրա տարբեր հոտերի ազդեցությունը ուսումնասիրելու նպատակով ամերիկացի երկու գիտնական՝ բժիշկ Ստենֆորդը և հոգեբան Ռեյնոլդսը հետազոտեցին և անկետավորեցին 5000 մարդու՝ 7—75 տարեկան: Փորձերի ժամանակ ծառախեժի, ծաղիկների ու մրգերի, խոտի, թառամած տերևների, դեղաբույսերի, տաք հացի և մի շարք այլ բուրմունքներ արձակող 260 տարբեր էսենցիաներ օգտագործեցին: Դրանցից բացի փորձեցին պարֆյումերիայի և կոսմետիկայի 80 միջոցների բուրմունքների, ինչպես նաև փտած բրնափայտի, այրած ռետինի, ս.նկերի, տորֆի, բորբոսի ախտահանության միջոցների, ներկերի, լաքերի և ժամանակակից քիմիայի այլ արտադրանքի հոտերի ազդեցությունը:

Հետազոտությունները պարզեցին, որ հոտերի նկատմամբ զգայունությունը խիստ

անհատական է տարբեր մարդկանց համար: Հետաքրքրական են ընդհանուր օրինաչափությունները: Օրինակ, մեր հոտառությունը փոփոխվում է կյանքի ամբողջ ընթացքում և ավելի զարգացած է երեխաների ու տարեցների մոտ: Հոտերի նկատմամբ զգայունությունը սրվում է որոշ հիվանդությունների, ասենք՝ երիկամների բորբոքման ժամանակ:

Մարդու վրա ներգործելու բնույթով, մասնագետները հոտերը բաժանել են հինգ խմբի՝ թարմացնող կամ հանգըստացնող, դրական հույզեր գրգռող, ընկալումը բթացնող, ներվերը գրգռող, զզվանք առաջացնող (փտահոտերի, օրգանական քիմիայի տարրալուծումների, այրված ռետինի, բրդի, շատ այլ քիմիական նյութերի հոտերը):

Պարզվում է, որ մինչև 85 տարեկան հասակը կանայք և տղամարդիկ ամենից լավ զգում են ծառախեժի, լորենու, խոտի, մեղրի բուրմունքը: Կանայք տղամարդկանցից վատ են տանում ախտահանության և մի շարք քիմիկատների հոտերը: Դրա փոխարեն կանայք ավելի հանդուրժող են կենցաղային վատ հոտերի նկատմամբ:

Անկետավորված մարդկանց համարյա 80 տոկոսը, հայտնել է, որ իրենց տրամադրությունը բարձրանում է, երբ շնչում են փշատերևի, խնձորի, ծովային աղի բուրմունքը: Համարյա բոլորի մոտ դրական հույզեր են առաջացրել հովտաշուշանի և մանուշակի բուրմունքը: Նշանակալի չափով քիչ «միավոր» է հավաքել թխենին՝ նրա բուրմունքը հաճախ անհանգստություն, գլխացավ է առաջացրել: Շատերի մոտ անհանգիստ վիճակ, գրգռվածություն, սրտխառնոց են առաջացրել բորբոսի, հոտած ջրի, ճահճի հոտերը: Մինչև 15 տարեկան երեխաների վրա յուրահատուկ ազդեցություն է գործում երիցուկի, անանուխի, նոր հնձած խոտի բուրմունքը: Թեստերը ցույց են տվել, որ այս հոտերով հագեցած սենյակում անցկացրած մի քանի ժամվա ընթացքում, նույնիսկ թույլ աշակերտների մտքի ընթացքն արագանում և տրամաբանական է դառնում, նրանք ավելի հեշտ են լուծում խնդիրներն ու օրինակները:

Սակայն նշված որոշ օրինաչափություններ կապված են անկետավորվածների, ապրելաձևի և անձնական ապրումների հետ: Օրինակ, նարգիզների ու մանուշակների թույլ բուրմունքն անգամ շատերին տրամադրում է սենտիմենտալության, տարեցներն ասում են, թե կարծես երիտասարդության օրերն են մտաբերում, վաղուց մոռացված մեղեդիներ ու բանաստեղծություններ, որոնք իրենց կյանքի երջանիկ օրերն են հիշեցնում:

Հասմիկի և յասամանի բուրմունքը անդորրության զգացողության կամ էլ հոգեկան անտարբերության (ապատիայի) վիճակի է հասցնում: Հակառակ էֆեկտ են առաջացնում պարտեզային շուշանները ու խոլորձները, որոնք գրգռող են, իսկ որոշ մարդկանց մոտ էլ բթացնում են իրականության ընկալումը: Դրա փոխարեն վարդի բուրմունքը համարյա բոլորի մոտ ոչ միայն բավարարվածություն, այլև ակտիվ գործողություններ կատարելու ցանկություն է առաջացնում: Նման խթանող ազդեցություն են գործում նաև նարնջի և լիմոնի բուրմունքները: Իսկ, այ, փտած տերևների հոտը հաճախ թեթև տխրություն է առաջացնում:

Պետք է նշել, որ այս կամ այն բուրմունքը մարդու մեջ զգացական ճանապարհով նշանակալի որևէ դեպք կամ, ասենք, որոշ օծանելիքների բուրմունքը անցյալում սիրված կնոջ, իսկ ծովային ջրիմուռների հոտը ծովափնյա հանգիստ է հիշեցնում:

Հետազոտությունները մի անգամ ևս ապացուցեցին մեզ հայտնի ճշմարտությունը՝ մարդկանց մեծամասնությունը հիվանդագին է տանում մեր քաղաքակրթության առաջացրած հոտերը՝ ավտոտրանսպորտից արտանետվող գազեր, բազմատեսակ լաքեր, քիմիկատներ և այլն: Այդ հոտերը բացասաբար են անդրադառնում մարդու տրամադրության, ինքնազգացողության վրա, անհանգըստություն, ջղագրգռություն, սրտնեղություն են առաջ բերում:

Հանրագումարի բերելով ասենք, որ մարդու վրա ներգործում են, բնականաբար, ոչ միայն հոտերը, այլև աղմուկը, լուսավորությունը, շրջակա միջավայրի գունային գամման, ջերմաստիճանը, խոնավությունը և այլն: Այս բոլոր գործոնները, միջավայրի ընդհանուր ֆոն ստեղծելով, այս կամ այն կերպ նույնպես ազդում են մեր զգացմունքային հոգեվիճակի, տրամադրության վրա: Այս բոլորը պետք է իմանալ և նկատի առնել աշխատանքի և կենցաղի կազմակերպման ժամանակ թե՛ տանը, թե՛ դպրոցներում և թե՛ բուհերում:

# «Ակվարիում»

«Ակվարիում» սարքը նախատեսված է ջրային կենդանիների, մասնավորապես ձկների լողալու հատկությունները ուսումնասիրելու համար և կիրառելի է հիմնականում ձկնաբուծության մեջ: Ձկների որոշ տեսակների պահպանման համար ստեղծված են արհեստական ջրամբարներ, որտեղ չկան բնական պայմաններ (քար, խութ, ջրահոսք), ինչը արգելում է ձկների ինքնապաշտպանության բնազդի, ընդհանրապես բնական վարքագծի զարգացումը:

«Ակվարիում» սարքի հիմնական նպատակն է ստեղծել ջրի շարժ, որը մոտ է բնական պայմաններին, վարժել ձկներին հաղթահարելու որոշ արգելքներ և պատրաստ լինել ավելի մեծ փորձությունների:

«Ակվարիում» մոդելն ունի պարզ կառուցվածք: Այն բաղկացած է իրար հետ խողովակով ամրացված երկու փոքրիկ «ջրամբարներից»: «Ջրամբարները» հատուկ մետաղական պատյանով ամրացված են դանդաղ պտտվող շարժիչի վրա: Ամրացնելու ժամանակ «ջրամբարներին» կարելի է տալ ցանկացած թեքություն, որի շնորհիվ ստեղծվում է բնական պայմաններին մոտ ջրի շարժ:

Ձկների մարզումը սկսելու համար անհրաժեշտ է «ջրամբարներից» մեկը լցնել ջրով և ձկներով: Շարժիչը միացնելուց հետո «ջրամբարները» դանդաղ, որոշ անկյան տակ սկսում են պտտվել, ձկներով ու ջրով լի «ջրամբարը» բարձրանում է վեր, և ձկներն ու ջուրն այնտեղից տեղափոխվում են ներքև՝ մյուս «ջրամբար»: Եվ այսպես շարունակ: Մարզումը վերջացնելուց հետո կարելի է կանգնեցնել շարժիչը, անջատել «ջրամբարները» և հանել ձկներին:

Ձկների մարզման, ուսումնասիրման ժամանակ կարելի է փուլ առ փուլ մեծացնել ծանրաբեռնվածությունը, բարձրացնել ձկների ֆիզիկական ունակությունները առանց վնասվածքներ պատճառելու: Սարքը միակն է և ունի հեղինակային արտոնագիր՝ № 496650 (28—13) և № 4296625 (28—13). 17.08.87 թ.:

Հեղինակներ՝ 26 կոմիսարների շրջանի ՊՏԿ-ի ավտոմատիկայի խմբակի ղեկավար՝ ԱԼԲԵՐՏ ՀԱԿՈԲՅԱՆ

Խմբակի սան, Երևանի № 149 դպրոցի աշակերտ՝ ՎԱՀԵ ՍՈՒՎԱՐՅԱՆ



# ԺՊԻՏՆԵՐ

● Մի երիտասարդ պարծենում էր փիլիսոփա Արիստիպոսի առջև, որ անհաշիվ գրքեր է կարդացել։

— Երիտասարդ, իմացիր, միշտ չէ, որ շատակերներն առողջ և գեր են լինում,— ասում է փիլիսոփան։— Առողջ են նրանք, ովքեր լավ են մարսում կերածը։

● Արիստոտելին հարցրին, թե ինչ է շահում մարդ, երբ ստում է։

— Այն, որ նրան չեն հավատում, երբ նույնիսկ ճշմարտությունն է ասում,— պատասխանեց փիլիսոփան։

# Հարցուպատասխան

● Ո՞վ է իսկական հերոսը։
● Նա, ով առաջին հերթին իր կրքերն է հաղթում։

● Ո՞վ է մարդու ամենալավ ուսուցիչը։
● Կարիքը։

● Ի՞նչ է պատերազմը երկու քաղաքակիրթ ազգերի միջև։
● Դավաճանություն և հանցագործություն՝ մարդկության նկատմամբ։

● Ո՞րն է վախկոտների ուժը։
● Զրպարտությունը։

● Ի՞նչ է երջանկությունը։
● Առաքինության վարձատրությունը։

● Ի՞նչ է բարոյականությունը։
● Երջանկության գիտությունը։

● Ի՞նչ է զրպարտությունը։
● Բոց, որը սևացնում է, սակայն չի այրում։

● Ո՞ւր է գնում հույսը, երբ մեզ լքում է։
● Մեր գերեզմանը փորելու։

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

● Չմշկասահքը շատ հին պատմություն ունի։ Հետազոտությունները ցույց են տըվել, որ նախապատմական մարդը սահում էր սառույցի վրա՝ ձիու ոսկրերի միջոցով, որոնք տաշում, հղկում էին՝ տալով թիթեղիկի ձև և կաշեփոկերի օգնությամբ կապում ոտքերին։

● Լոնդոնում գոյություն ունի մի ակումբ, որի անդամներն ապրում են հին տներում ու դղյակներում և չեն օգտագործում այն, ինչ հայտնաբերվել է 1500 թըվականից հետո։ Վերջերս ակումբից վըտարվեցին երկու անդամներ, որովհետև հեռախոս էին տեղադրել իրենց բնակարաններում...

● Ավստրալիայի հարավ-արևելյան մասում միլիոնավոր ճագարներ են ապրում։ Նրանք շրջում են խումբ-խումբ՝ անջրդի վայրերում սնունդ և ջուր որոնելով։ Վերջերս ճագարների թիվն այնքան էր ավելացել, որ կառավարությունը ստիպված եղավ զորք ուղարկել նրանց գնդացիրներով ոչնչացնելու համար։

Հունարենից թարգմանեց

ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԸ



ՀԵՆՐԻ ԷԼԻԲԵԿՅԱՆ. «ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ»

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒԼՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵԶՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱԹԱԲԵԿՅԱՆ Ն.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806